1916

№ 26.—Յունիսի 26

ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 ԿՈՊԷԿ

ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ

10 ԿՈՊԷԿ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 4 րուբլի, կէս տարուան 2 ր. 50 կ.
Բարեգործական Ընկերութեան անդամների, հայ դպրոցների, ուսուցիչների հասարակական հիմնարկութեանց համար՝ տարեկան 3 ր., կէս տարուան 2 ր. Արտասահման՝ տարեկան 5 ր., կէս տարուան 3 ր.

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** Թիֆլիս, Արտասարդեան հրապար. № 7.
Հեռախօս № 29.

Պատի հասցէն.—Тифлисъ, „Амбаваберъ“. Tiflise, Rédaction du journal „Hambavaber“.

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** տողին 10 կոպ.
Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրէրից։
Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման։
Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։
Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ։

*Կիրակի, ա[illegible] 26-[illegible]տեան 8 ժ. 10 ր. Թիֆլիս կը ժամանէ*

# ՆՈՐԻՆ ՕԾՈՒԹԻՒՆ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ ՎԵՀԱՓԱՌ ԿԱԹՈՂԻԿՈՍ

# Տ. Տ. ԳԷՈՐԳ Ե.

ԸՆԴՈՒՆԵԼՈՒԹԵԱՆ ՅԱՆՁՆԱԺՈՂՈՎԸ հարկ է համարում այս մասին ծանուցանել Թիֆլիսի արգոյ հայ հասարակութեան և դպրոցական-ազգային կուլտուրական բոլոր հաստատութիւններին։

ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ՄՈՒՏՔԸ երկաթուղու կայարանից կանցնի Վօկզալնայա, Ելիսաւետինսկայա, Պերգովսկի փողոցներով, Միքայէլեան պրոսպէկտով, Նիկոլաեւեան կամուրջներով մինչև Ալէքսանդրեան այգին, որտեղից եկեղեցական թափօրը կառաջնորդէ մինչև Վանքի աւագ եկեղեցին։

ՀՈՅՑ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ ԵՒ ԲՈԼՈՐ ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆՆԵՐԸ հրաւիրւում են պատշաճաւոր ընդունելութիւն ցոյց տալու համար մեծ բազմութեամբ ընդառաջել

**ՆՈՐԻՆ ՍՐԲՈՒԹԵԱՆ**

երկաթուղու կայարանը։

ԸՆԴՈՒՆԵԼՈՒԹԵԱՆ ՅԱՆՁՆԱԺՈՂՈՎԸ խնդրում է այն ազգայիններին, որոնք բնակւում են յիշեալ փողոցներում, կարելոյն չափ զարդարել իրենց տների պատշգամբներն ու լուսամուտները։

ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆՆԵՐԻ ԱՅՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑԻՉՆԵՐԸ, որոնք կը ցանկանան Վեհարանում ողջոյնի խօսք ասել ՆՈՐԻՆ ՕԾՈՒԹԵԱՆ, պէտք է այս մասին վաղօրօք յայտնեն Կարգադրիչ Յանձնաժողովի նախագահ պ. Տ. Նազարեանին։

ԵՐԿԱԹՈՒՂՈՒ ԱՐՔԱՅԱԿԱՆ ՍՐԱՀԸ մտնելու թոյլ է տրւում առանձին տոմսակ ունեցողներին։

ՏՈՄՍԵՐԸ կարելի է ստանալ Առաջնորդարանում յունիսի 24-ին և 25-ին, ուրբաթ և շաբաթ օրերը, առաւօտեան 10—12 ժամը և երեկոյեան 6—8 ժամը։

**ՎԵՀԱՓԱՌԻ** Թիֆլիս գտնուած ժամանակ Վեհարանում մշտական հերթակալներ կը լինեն Կառավարիչ Յանձնաժողովի անդամներից, որոնց և պէտք է դիմել ամեն կարեւոր դէպքերում։

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ





Նորին Վեհ. Կաթողիկոս Ամենայն Հայոց
ԳԷՈՐԳ Ե.

### ՎԵՀԱՓԱՌ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ ԺԱՄԱՆՈՒՄԸ ԹԻՖԼԻՍ

Այսօր, տասօրեան գնացքով Էջմիածնից ժամանում է Թիֆլիս Նորին Ս. Օծութիւնը, Ամենայն Հայոց Կաթողիկոս Գէորգ Ե-ը.

Ընդունելութիւնը կատարուելու է մեծ շուքով, ինչպէս որ ծրագրել էր իր Վեհին սպասող հայ ժողովուրդը.

Ողջունում ենք Նորին Վեհափառութեան գալուստը:

Ողջունում ենք Նրա ներկայութիւնը Կովկասեան մայրաքաղաքում այժմեան ծանրակշիռ պարագաներում.

Կաթողիկոսին դիմաւորող և փառքով ու պատւով ընդունող հայ ժողովրդի այժմեան հոգեբանութիւնը, մտածելակերպը, նրան յուզող մտքերը և զգացմունքները տարբերւում են խաղաղ ժամանակուայ հոգեբանութիւնից և մտածողութիւնից.

Երևոյթը բնական է և հասկանալի, եթէ ի նկատի առնենք ներկայ պայմանները և դառը իրականութիւնը.

Հայ ժողովուրդը՝ թէ Ռուսաստանի և թէ Տաճկաստանի՝ Կաթողիկոսի անուան հետ կապում է մի շարք յուրջ և ծանր խնդիրներ, որոնք առաջ են եկել պատերազմի ընթացքից.

Աւերիչ պատերազմը սրի ու հրի ասպարէզ դարձրեց Հայաստանը, ներկեց երկիրը արիւնով, բնաջինջ արաւ երկրի խաղաղ ու աշխատասէր հայ ժողովրդի ստուար մասը, իսկ մնացեալը անարեկուած ցիր ու ցան եղաւ իր կեանքն ազատելու համար, կամ բռնութեամբ աքսորուեց տաճիկ կառավարութեան արիւնարբու դեկավարների գժոխային ծրագրով Հայաստանից հեռու՝ Միջագետք և այլ Հայոց աշխարհից կտրուած վայրեր, մինչդեռ նրանց համար գուցէ աւելի գերադասելի լինէր մեռնել հայրենի երկրում, քան թէ ենթարկուել անվերջ տանջանքների ու բռնութիւնների օտարութեան մէջ.

Այդ մարտիրոսների հառաչանքներն ու օգնութեան աղաղակները խուլ կերպով երբեմն հասնում էին և Էջմիածին, յուզում ու խորապէս ցաւեցնում ազգիս Հայրապետին, ծանր մտահոգութիւն պատճառում ու հոգեկան հանգստութիւնից զրկում.

Մարդկային խօսքը, գրիչը, վրձինը անկարող են արտայայտելու այն արհաւիրքները, որը վիճակուեց այս պատերազմի ընթացքում խեղճ հայ ժողովրդին.

Դժուար է հաշտուել այն սև իրականութեան հետ, որը յանկարծ բացուեց մեր առաջ.

Հեշտ չէ տանել այն մեծ չարիքի հետևանքները, որը պայթեց հայ ազգի գլխին.

Սակայն չը պէտք է վհատուել, չը պէտք է լքուել.

Վհատութիւնն ու լքումը ճանապարհ են բանում կործանման անդունդի.

Մենք դեռ չենք հասել այդ դրութեան.

Մեր առաջ դեռ չեն փակուել լաւագոյն ապագայի դռները.

Հարուածը մեծ է, բայց մեր ժողովրդի կամքի ոյժը, նրա տոկունութիւնն ու համբերատարութիւնը պէտք է հանարուեն գրաւական դժուար կացութիւնից դուրս գալու համար:

Հենց այդ նպատակին հասնելու համար ներկայ պարագաներում մեզնից պահանջւում է աչալրջութեան հետ կատարեալ ու անխախտ համերաշխութիւն մեր բոլոր արտաքին և ներքին գործերում և ձուլուած գործունէութիւն:

Եւ միայն այդպիսի պարագաներում Ամենայն Հայոց Կաթողիկոսն էլ կարող կը լինի, յենուելով ազգի աջակցութեան վրայ՝ կատարել այն, ինչ որ Նրանից սպասւում է.

Հայոց Կաթողիկոսը, իբր ազգի ընտրեալ, իբր նրա բարձր ներկայացուցիչը, հանդիսանում է ուր որ հարկաւոր է ազգի մտքերի և իղձերի թարգման։

Նորին Վեհափառութեանն այժմ վիճակուած է կատարել մի այդպիսի կարևոր առաքելութիւն, պարզել Օգոստափառ Փոխարքայի, բարեմիտ Մեծ Իշխան Նիկոլայ Նիկոլաևիչի առաջ տաճկահայերի դրութիւնը, հրաւիրել Նրա ողորմած ուշադրութիւնը թէ ըստ առաջին կարգի ինչ մտքեր են յուզում հայ ժողովրդին և ինչ է նրա գերագոյն տենչանքները։

Փախստականների վերադարձը իրենց երկիրը, ուր արդէն բաւական ապահովութիւն է ստեղծուել, կարևոր և ամենից զբաղեցնող խնդիրն է։ Բոլոր փախստականների բուռն ցանկութիւնն է և ջերմ ձգտումը, որ օր առաջ վերադառնան հայրենիք, տիրանան իրենց տուն ու տեղին, հողերին և սկսեն վերաշինութեան գործը։ Ոչ պակաս հալում և մաշում է ամեն մի հայի սիրտ այն բազմաթիւ հայ երեխաների, կանանց և այր մարդկանց ողբալի վիճակը, որոնք մինչև օրս մնացել են գերի քիւրդերի և տաճիկների ձեռքը, այն էլ քաջարի ռուսաց զօրքի նուաճած տեղերում։ Այդ դժբաղդների փրկութեան համար հարկաւոր է իշխանութեան կտրուկ և եռանդուն միջոցները, որը դժբաղդաբար մինչև օրս ինչ ինչ պատճառներով չէ կատարւում։

Վերջապէս, համայն հայութիւնը վերին աստիճանի յուզուած և լարուած դրութեան մէջ է Միջագետքի և Տաճկաստանի այլ խորքերը աքսորուած հայերի վիճակի մասին։

Անհրաժեշտ է գտնել ճանապարհ Ամերիկայի միջոցով կամ մի այլ ձևով նիւթական օգնութիւն հասցնելու օտարութեան մէջ տառապող հայերին։

Այս խնդիրներ, որ Դամոկլեան սրի պէս հանգիստ չեն տալիս ամեն մի հայի և հոգեպէս տանջում նրան։

Վստահ ենք, որ Ամենայն Հայոց Հայրապետը, որի սրտին շատ մօտ են այդ խնդիրները, կաշխատի որոշ և բաւարար լուծումն տալու՝ ալեկոծուող հայութեան սիրտը հանգստացնելու համար։

Կրկին բարի գալուստ Ազգի Ընտրեալին և կատարեալ յաջողութիւն։

Ս. Յ.

---

# Համաշխարհային պատերազմը

## ՏԱՃԿԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Կովկասեան ճակատում վերջին ժամանակներս կռիւները կենդրոնացել են գլխաւորապէս հիւսիսային գծերի վրայ։

Ծովամերձ շրջանում թիւրքերը չեն հրաժարւում Տրապիզոնը վերագրաւելու մտքից և Պլատանայի կողմից շարունակ յարձակումներ են գործում ռուսների վրայ առանց շօշափելի արդիւնքի։

Լուրջ կռիւներ տեղի ունեցան այս շաբաթ Գիւմիւշխանէից արևելք։ Թուրքերը խոշոր ուժերով շարժուելով դէպի արևելք յաջողում են պատռել ռուսների ռազմագծերը և անցնել նրանց թիկունքը։ Սկսւում է մի կատաղի կռիւ։ Ռուսները սեղմելով իրենց զօրամասերի մէջն ընկած թշնամուն յետ են վանում։ Այնուհետև եղած փորձերն անհետեւանք են մնացել։

Բաբերդի շրջանում վերջին օրերս կռիւների նախաձեռնութիւնը ռուսներին է անցել։ Սրանք քայլ առ քայլ մօտենում են Բաբերդին՝ գրաւելով թիւրքերի լեռնային դիրքերը։ Թշնամին այստեղ մեծ դիմադրութիւն չէ ցոյց տալիս և կռիւները սահմանափակւում են թեթև ընդհարումներով։

Հարաւային գծերում այս շաբաթ ըստ մասնաւոր լուրերի թիւրքերն սկսել են նորից ուժեր կենդրոնացնել Բաղէշի և Մուշի շրջաններում։

Պարսկական ճակատում այս շաբաթն անընդհատ կռիւներով անցաւ։ Մուսուլի գծում ռուսները դեռ Ռևանդուզից առաջ չեն անցել։ Թշնամին այստեղ չէ թողնում, որ նրանք պաշտպանողական դրութիւնից դուրս գան։

Աւելի ուշագրաւ են Բաղդադի գծի վրայ այս շաբաթ տեղի ունեցած կռիւները։ Խալիլ-փաշայի ընդհ. հրամանատարութեան տակ 4—5 զօրաբաժին (դիւզիա) զօրք կենտրոնացնելով թիւրքերն առաջ խաղացին Խանիկէն-Քիրմանշահի ուղղութեամբ։ Բերէնդ քաղաքը վերագրաւելուց յետոյ նրանք ներկայումս շարժւում են Քիրմանշահի վրայ։ Ռուսների վերջապահ գնդերը անընդհատ կռիւներով բաւական ուժասպառ են արել թշնամուն. բայց և այնպէս վերջինս իր յարձակողական ընդունակութիւնը չէ կորցել։

## ԲԱԼԿԱՆԵԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Յունաստանում սկսուած է արդէն զօրքերի զօրացրիւը (դէմօբիլիզացիան), որով դաշնակիցներից առժամապէս գոնէ վերանում է «յունական վտանգը»։ Միաժամանակ՝ ռուսական առաջխաղացութիւնը Բուքովինիայում շարժել է ռումինացիներին, որով նորից ծառանում է Բուլգարիայի առաջ «ռումինական վտանգը»։ Վերջապէս երրորդ կողմից՝ ռուսական և ֆրանսական ճակատներում ստեղծուած տագնապն ստիպել է աւստրիացիներին և գերմանացիներին իրենց զօրքերի մեծ մասը դուրս հանել Բալկաններից։ Այսպիսով Բալկաններում դաշնակիցների դէմ կանգնած է միայն Բուլգարիան։ Ըստ երևոյթին ամենայարմար վայրկեանն է դաշնակիցների համար գրոհ տալու բուլգարների վրայ։ Եւ արդէն կռուի նախանշանները երևում են։ Վարդարի ձախ ափին սկսուած է մի կատաղի թնդանօթամարտ ֆրանսացիների և բուլգարների միջև, իսկ աջ ափին անընդհատ կռիւներ են տեղի ունենում առաջապահ զօրամասերի միջև։

## ԱՒՍՏՐԱ-ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Հիւսիսային գծերում գերմանացիք գրեթէ բոլոր ռազմագծերի վրայ սկսել են ուժեղ թնդանօթամարտ, որ նպատակ ունի մի կողմից՝ տեսնել ռուսների ոյժը այս կամ այն կէտերում, իսկ միւս կողմից՝ լարած պահել նրանց հիւսիսային զօրամասերը, որպէսզի վերջիններս արգելք չը հանդիսանան իրան՝ օգնութիւն հասցնելու աւստրիացիներին։ Բացի այդ տեղի են ունենում շատ կէտերում նաև հետևակների յարձակումներ։ Հետևակային կռիւներից յիշատակութեան արժանի է Բարանովիչի կռիւները, որոնց ընթացքում ռուսները մօտ 3000 գերի են առել գերմանացիներից։

Հարաւային գծերի վրայ (Պրիպետից հարաւ) ռուսները շարունակում են առաջ ընթանալ երկու թևով՝ Վոլինիայում և Բուքովինայում։ Վոլինիայում նրանք հասել են գրեթէ պետական սահմանին. իսկ Բուքովինայում մինչև Պրուտի ակունքը՝ գրաւելով Կուտ և Կոլոմեա քաղաքները։ Վերջինիս գրաւումը խիստ զգալի պէտք է լինի թշնամու համար իբրև մի քանի երկաթուղիների հանգոյց։ Գալիցիայի գծերի վրայ ռուսները առայժմ բաւականանում են թնդանօթամարտով։

Մայիսի 22-ից մինչև հիմա ռուսները գլխաւորապէս հարաւային գծերի վրայ գերել են մօտ 250,000 մարդ և խլել 300-ի չափ թնդանօթ և մօտ 700 գնդացիր։ Աւստրօհունգարիան երկար

*ժամանակի կարիք պէտք է ունենայ այս հսկայական կորուստները լրացնելու համար։*

*Անգլո-ֆրանսական ճակատում ամսիս 18-ից սկսուած են դաշնակիցների յարձակումները գերմանացիների վրայ՝ Անկր և Սոմ գետերի միջև։ Յարձակումից մի քանի օր առաջ անգլիական թնդանօթները արտակարգ գործունէութիւն էին ցոյց տալիս հիւսիսային բոլոր գծերի վրայ։ Ամսիս 18-ին անգլիացիները նախապէս տարածելով թշնամու դիրքերում թունաւոր գազեր՝ յարձակման դիմեցին Անկր և Սոմ գետերի միջև գերմանացիների վրայ և գրաւեցին առաջին շարքի ամրութիւնները։ Յաջորդ օրը յարձակման անցան ֆրանսացիք հարաւն գծի վրայ, որ տարածւում է Սոմից հարաւ։ Յարձակումները տուեցին դաշնակիցների ձեռքը մի քանի ամրացած գիւղեր, մօտ 15,000 գերի և հարիւրի չափ թնդանօթ։ Դաշնակիցները յառաջապէս այս վայրում են սկսել իրենց յարձակումները՝ Շամպանիայում գործող գերման զօրքերի թիկունքն անցնելու ակներև դիտաւորութեամբ։ Առայժմ նրանք ճեղքել են միայն առաջին երկու կարգի ամրութիւնները։*

*Իտալական ճակատում աւստրիացոց սկսած արշաւանքը կատարեալ անյաջողութեան հանդիպեց։ Ռուսական ճակատի վրայ կրած ահաւոր պարտութիւնները մի կողմից և իտալական զօրքերի շուտափոյթ կենտրոնացումը վտանգուած վայրերում միւս կողմից ստիպեցին աւստրիացիներին յետ քաշուել Իտալիայից և իրենց նախկին դիրքերի մէջ մտնել։ Իտալական արշաւանքը թողց միայն Վենետիկը գրաւելու յոխորտանքը, որ 50,000 մարդու կորուստ պատճառեց Հաբսբուրգների պետութեանը։*

### ԾՈՎԵՐԻ ՎՐԱՅ

*Ծովերի վրայ տեղի ունեցած դէպքերից յիշատակութեան արժանի է Գէօբէնի և Բրեսլաուի նոր յարձակումը Սև ծովի ափերի վրայ։ Ամսիս 21-ին Գէօբէնը ռմբակոծում է Տուապսէ քաղաքը և ընկղմում նաւահանգստում խարիսխ ձգուած «Իշխան Օբոլենսկի» մարդատար շոգենաւը։ Միևնոյն ժամին Բրեսլաուն ռմբակոծում է Սոչին և ընկղմում մի քանի փոխադրանաւ։*

* * *

## Ներքին տեսութիւն

### ՊԱՐՏԱԴԻՐ ՈՒՍՄԱՆ ՕՐԷՆՍԴՐԱԿԱՆ ՆԱԽԱԳԻԾ

*Կրթական նախարարը առաջադրում է մի նոր օրէնսդրական նախագիծ՝ ընդհանուր պարտադիր ուսման մասին։*

*«Պարտադիր ուսումը—ասուած է նրա բացատրական գրութեան մէջ—անհրաժեշտութիւն է ներկայանում՝ կատարեալ դարձնելու համար ընդհանուր ուսուցման մատչելիութիւնը։ Որովհետև դպրոցական ուսում տալուց խուսափելը առաջ է գալիս ազգաբնակութեան տգիտութիւնից, այլև նեղմիտ անհասկացողութիւնից, թէ ուսումը կապ չունի տնտեսական ապահովութեան հետ—այդ պատճառով էլ անհրաժեշտ են՝ թէ պետութեան ազդեցութիւնը՝ ուսման տարիքին հասած զաւակների տէր ծնողների վրայ և թէ իրեն ազգաբնակութեան մասնակցութիւնը, որպէս զի իրականանան նաև ձեռնարկները։*

*Այնուհետև նախարարի բացատրական գրութեան մէջ ասուած է, որ պարտադիր ուսուցումը մօտ է իրականանալու եւրոպական Ռուսաստանի շատ նահանգներում. այժմ հասել է ժամանակը՝ իրագործելու նաև պետութեան միւս մասերում։ Այդ նպատակին հասնելու միակ միջոցն է, ինչպէս փորձերը ցոյց են տուել Արևմտեան-Եւրոպական պետութիւնների մէջ, դպրոց յաճախելը պարտադիր դարձնել որոշ տարիքից սկսած՝ մինչև որոշ տարիք երեխաների համար։ Նախարարութիւնը ենթադրում է, որ սակայն աննպատակայարմար է ներկայանում միաժամանակ գործադրել նախագծուած օրէնքը ամբողջ Ռուսաստանի համար։ Նախարարը մտածում է սահմանել հետևեալ օրէնքները.*

*«Ծնողները և կամ այն անձերը, որոնց խնամքին են թողնուած երեխաները, եթէ առանց յարգելի պատճառների և դպրոցի հոգաբարձութեան երեք անգամ ազդարարութիւնից յետոյ՝ չեն ուղարկիլ դպրոց իրենց այն մանուկները, որոնց համար ուսումը պարտադիր է ըստ օրէնքի, կենթարկուեն դրամական տուգանքի՝ օրական 10 կոպէկից ոչ աւելի, իւրաքանչիւր երեխայի չը յաճախած ուսման օրուայ համար»։*

*Այդ տուգանքներից կազմուած դրամագլուխը կը յատկացուի դպրոցի աղքատ աշակերտներին։*

*Պարտաւորիչ ուսուցման գործադրութիւնը կը յանձնուի գէմստուոյական և քաղաքային համայնական վարչութիւններին։*

### ԹՌՈՒՑԻԿ ԱԿՆԱՐԿ ՇԻՐԱԿԻ ԳԱՒԱՌԻՑ

Ա

*Ալէքսանդրապոլի գաւառը զուտ Հայկական մի վայր է, մաքուր հայերէնով, զուտ հայի սովորութիւններով ու բարքերով։ Մի վայր, ուր անխառն, յստակ լեզուի հետ միասին կարելի է լսել հարազատ ազգային երգեր, լէլէներ։ Կարծում էի, որ այստեղ է, ուր կռում. կոփում են մեր ազգային պարերը ու երգերի եղանակները։ Ալեքսանդրապոլ և Աւետիս Իսահակեան—այս երկու անունները բնաւ չեն բաժանուել իմ մտքի մէջ։ Աւետիս Ահարոնեանին ես երբէք չեմ կապել Իգդիրի հետ, բայց Իսահակեան, Աշուղ Ջիւանի, Բրուտեան, Աշուղ Ֆարհատ միշտ անբաժան են եղել ինձ համար Ալեքսանդրապոլ անուան հետ։ Ալեքսանդրապոլ—լաւ դուդուկ, սրինգ և լաւ պար, ինչպէս օր. Աշտարակ և լաւ հայհոյանք։ Թէպէտ Ալեքսանդրապոլ անուան հետ կապուած է եղել և փոշին, ցեխը, կոկորդային, կոպիտ ձայնի ելևէջով բարբառը, բայց չը նայելով սրան, ինչ-որ մի բան մագնիսի պէս շարունակ ինձ ձգել է դէպի այս քաղաքը։*

*Հիասթափութիւնս կատարեալ էր, երբ անցայ հարիւրի չափ գիւղեր, որոնց անունները առանց բացառութեան թուրքերէն են. Ղօնախղրան, Բողազ քեասան, Աղ Քիլիսէ, Ղարա Քիլիսէ, Օրթա Քիլիսէ, Քէշիշքեանդ, Գէօզալ դարա, Գիւլլիւ Բուլախ, Սէօգի Քիլիսէ և այլն։ Եւ այս գիւղերում ոչ թէ մաքուր հայերէն լեզու, այլ եթէ ես թուրքերէն չ'գիտենայի, ինձ իբրև հայի, այդ հայ լեզուն անհասկանալի պիտի լինէր։ Յիրաւի, ո՞ր հայը, թուրքերէնին անգիտակ, կարող է հասկանալ «սարահատան, սօրա, եաթաղ օրթա, արթըխ, էփեջա, խօրաթա [1]), եոլդան, սաքան, տախսան, ալթմըշ, եթմիշ, քեասա եայլն եայլն։ Գիւղերի անունների համար, ի հարկէ, մեղք չունի այս ժողովուրդը, բայց պիտի ասել, որ մօտ հարիւր տարուայ ընթացքում բաւականին հաւատարիմ է մնացել նա տաճիկ լեզուին և տաճկական սովորութեան։ Նկատուած երևոյթ է, որ լաւ բանը հասարակ ժողովրդի մէջ մեծ դժուարութեամբ է ընդունելութիւն գտնում, իսկ վատը դժուարութեամբ վերանում։ Որքան է անցել Պասկևիչի ժամանակից, բայց տաճկական կնիքը ո՛ր աստիճանի դեռ նկատելի է այս ժողովրդի վրայ... Ահա նոր գաղթականը—Ֆիլօ, Զանօ, Խասօ, Մնօ, Աւտօ։ Ո՞վ է ստիպել հային քիւրդի անուններով յարջորջել իր երեխային։ Քիւրդի տարազից էլ կարծես նա անյօժար է բաժանւում։ Կան և իրար հետ քրդերէն խօսողներ։ Բայց դառնանք էլի հին գաղթականներին, այսինքն Ալեքսանդրապոլի այժմեան գիւղացուն։ Իմ տպաւորութիւնները թռուցիկ են, մակերեսային, իսկ այս գրած չի կարող լինել սխալներից, այնպէս որ, պատմաբանը երբևիցէ գրածներս կարդալիս՝ աչքի առաջ պիտի ունենայ այս հանգամանքը։*

*Հիասթափութիւն ասացի, այո, երբ շարունակ աչքերիս ա-*

[1]) Յունարէն է. խօղեոյ—զրուցել, զրից անել։ Ծանօթ. խմբ.

առաջ, կանոնաւոր շէնքերի փոխարէն, երեւում են գետնափոր տների պէս խրճիթներ և աղբակոյտեր, աղբակոյտեր։ Թէպէտ քարաշէն, բայց մութ են ու մռայլ այս խրճիթները։ Եւ մարդիկ այստեղ են ապրում խլուրդների նման։ Անասունների միզային թթուտը, նրանց աղբը, մարմնի արտաշնչած գոլորշիները միշտ, իսկ օրուայ մի քանի ժամը սրանց հետ միասին և խեղդող, աչք կուրացնող ծուխը, խառնուած մարդկանց արտաշնչութեան, ծխախոտի ծխի և փոշու հետ, կատարեալ են դարձնում օդա կոչուած գժոխքը, ուր տասնեակներով են քնում մարդիկ «սաքուների վրայ կողք կողքի, մեծ ու փոքր, աղջիկ ու տղայ, ամուսիններ և երեխաներ, սրանց հետ միասին գոմէշներ, եզներ, կովեր, ոչխարներ, հորթեր, աղաւնիներ և հաւեր—բոլորը մի յարկի տակ, բոլորն էլ նոյն մթնոլորտում, նոյն օդում։ Փոքր, շատ փոքր են այս գոմերի լուսամուտները, երդիկները—այս մարդիկ լոյսի և օդի մասին չեն մտածում, միայն թէ տաք լինի։ Իզուր չեն անվերջ թագաւորում այստեղ լուերն ու ճանճերը։

Քարաշէն գոմը ընդհանրապէս ունի մի սենեակ, որ ցած պատով անջատուած է անասունների մասից. այդ կոչւում է գոմի օդա։ Այստեղ աթարի կրակը բուխարու մէջ անպակաս է։ Պերճ Պռօշեանի, Խաչատուր Աբովեանի նկարագրութիւնները այս առթիւ երազ էին թւում ինձ, բայց ահա քսաներորդ դարում ճիշտ նոյն պատկերը, նոյնիսկ Րաֆֆու խալիֆայական դպրոցները այս օդաներում։

Պակասում է միայն այր, ժէ, ճէ, ռա, բէն, խնի, ժէն, սէ։

Մտէք դուք օդա կամ որև է խանութ, ուրիշ գոլորշիների հետ միասին կը տեսնէք մախորկայի այնպիսի ծուխ, որ արձակել է տասնեակներով անգործ, պարապ մարդկանց այս բազմութիւնը, և սարսափած յետ կը նահանջէք։ Մտածում ես, միթէ այս մարդիկ չեն զգում թունաւորուած մթնոլորտը։

Չը մոռանամ ասել, որ ծխելը, ինչպէս և ձեռք բռնելը ըստ երեւոյթին համարւում է «bon ton» այս գիւղացիների մէջ։

Բժիշկ Աւետիս Տէր-Յովհաննիսեան

## ՏԵՂԵԿԱԳԻՐ ԴԻԼԻՋԱՆԻ ՓԱԽՍՏԱԿԱՆՆԵՐԻ ՈՐԲԱՆՈՑՆԵՐԻ

Համաշխարհային պատերազմի առթիւ առաջ եկած հայոց հաստատութիւններից են նաև Դիլիջանի որբանոցները, որոնք հաստատուեցան Հայոց Կենտրոնական Կոմիտէի նախաձեռնութեամբ, պատերազմի երկրորդ տարում, Վանի գաղթից յետոյ։

Սկզբնական շրջանում կարիքը մեծ էր և խիստ շտապողական. անհրաժեշտ էր քաղցի և հիւանդութեան ճիրաններից ազատել հազարաւոր որբ ու անտէր երեխաների, որոնք բախտի անողոք հարուածներից յետոյ կարօտ էին սնունդի և պաստպարանի։ Սկզբնական շրջանում կային որոշ անխուսափելի թերութիւններ, որոնք ժամանակի ընթացքում վերացան և այժմ Դիլիջանում գոյութիւն ունեն ինը կանոնաւոր որբանոցներ, որոնց վիճակը կարելի է համարել գոհացուցիչ։

Առաջին որբանոցը հիմնւում է անցեալ տարուայ օգոստոսի վերջերին, ապա միւսները։ Մինչև 1916 թ. յունուարի 1-ը՝ չորս ամսուայ ընթացքում բացւում են ութը որբանոց, որտեղ տեղաւորւում են 817 որբ ու որբուհի։

| Որբանոցներ | Որբերի թիւը | Տղայ | Աղջիկ |
|---|---|---|---|
| Ա. | 142 | 62 | 80 |
| Բ. | 334 | 124 | 210 |
| Գ. | 41 | 41 | — |
| Դ. | 90 | 52 | 38 |
| Ե. | 55 | 19 | 36 |
| Զ. | 49 | 24 | 25 |
| Է. | 58 | 31 | 27 |
| Ը. | 24 | 24 | — |
| Հիւանդանոցում | 24 | 13 | 11 |
| Ընդամենը | 817 | 390 | 427 |

Որբանոցների կարգաւորման շրջանում արդէն հնարաւոր է դառնում հոգալ երեխաների ոչ միայն սնունդը և հագուստը, այլ և նրանց կրթութեան ու դաստիարակութեան համար տրւում են որոշ դրական քայլեր։ Դիլիջանում, Ջարխէչում և Պօղոսքիլիսում բացւում են դպրոցներ մեր ծխական ուսումնարանների ծրագրով։ Առաջինում սովորում են Դիլիջանի որբանոցներում ապրող 450 որբ, իսկ վերջիններում ծնողների մօտ ապրող գաղթական երեխաները։ Բոլոր երեք վայրերի գաղթականական դպրոցների ուսուցչական խմբերը բացառապէս գաղթական ուսուցիչներից են։

Դպրոցների հետ զուգընթացաբար բացւում են արհեստանոցներ հասակաւոր անգրագէտ որբ ու որբուհիների համար. վերջինների համար բացւում է կար ու ձևի և ձեռագործի արհեստանոց, որտեղ սովորում են 50 աղջիկ, իսկ տղաների համար բացւում է ատաղձագործութեան և կօշկակարութեան արհեստանոցներ, որտեղ սովորում են 42 հոգի։ Այս արհեստանոցներում միաժամանակ սովորում են նաև գրաճանաչութիւն։

Բացի վերոյիշեալ սիստեմատիկ զբաղմունքները, որբանոցներում երեխաների հետ պարապում են նաև ընթերցանութեամբ և ձեռագործով։

Որբերի սնունդը *) կարելի է համարել գոհացուցիչ, մանաւանդ եթէ ի նկատի առնենք ներկայ ծանր պայմանները։ Ձմեռը շաբաթը տրւում էր 5 անգամ մսեղէն կերակուր և 2—3 անգամ թէյի հետ ձու. իսկ մայիսի 1-ից տրւում է շաբաթը 2—3 անգամ մսեղէն։ Ամէնայն օր տրւում է կաթ կամ մածուն ու թէյ։ Մայիսի սկզբներից ձուի և մսեղէն կերակրի փոխարէն աւելի յաճախ տրւում է կաթնեղէն։

Այժմ բոլոր որբանոցներում ամեն մէկն ունի երկու ձեռք սպիտակեղէն, այլ և վերնազգեստ։ Բաղանիքից օգտւում են շաբաթը մէկ անգամ և ինչպէս սպիտակեղէնը, նոյնպէս և վերնազգեստները փոխւում են շաբաթը 1 անգամ։

Որբանոցների ծառայողների թիւը հասնում է 90-ի, որով միջին հաշուով իւրաքանչիւր որբանոցին ընկնում է 10 հոգի։ Ամէն մի որբանոց ունի կառավարիչ կամ կառավարչուհի, սրանց օգնականուհի, մայրապետներ, խոհարար, ծառայ և լուացարարուհիներ։ Արգելւում է որբերին կատարել սև աշխատանք և իրենց ուժերից վեր գործ։

Որբանոցների գոյութեան վերջին հինգ ամսուայ շրջանում առանձնապէս աչքի էին ընկնում երեխաների մէջ տարածուած քոս և գլխի մազային մասի վարակիչ հիւանդութիւններ, որոնք խիստ տարածւում են յունուար ամսին։ Շատ դժուար է լինում միանգամից արմատախիլ անել վերոյիշեալ հիւանդութիւնները, որովհետև հետզհետէ նոր եկող որբերի ճնշող մեծամասնութիւնը վարակուած էր լինում այդ ախտերով։ Բացի այդ՝ շէնքերի և այլ անյարմարութիւնների շնորհիւ ննջարանները չափազանց լցուած էին որբերով, որոնք տակաւին չունէին երկու ձեռք սպիտակեղէն։ Յունուարին քոսոտների թիւը հասաւ մինչև 400-ի, իսկ գլխի վէրք ունեցողներինը՝ 104-ի։

Սակայն այժմ ձեռք առնուած կտրուկ միջոցների շնորհիւ, քոս ունեցողների թիւը զգալի չափով պակասել է և վերջանալու վրայ է։ Ձեռք առնուած միջոցներն էին՝ նոր շէնք, որով հնարաւոր է դարձւում մահճակալներն իրարից հեռու դասաւորել և վերացւում է ընդհանուր մահճակալների (նառերի) սիստեմը, որ մի քանի որբանոցներում կային։ Բոլոր, նոյնիսկ ամենաթեթև քոս ունեցողներին առանձնացրինք Բ. որբանոցում, որտեղ որբանոցների բժշկի հսկողութեան տակ ամենայն օր լողացնում էին երեխաներին և դեղ քսում. ապա զգուշութեան համար նոր առողջացողներին չէինք ցրում զանազան որբանոցներ, այլ այդպիսիների համար ի նկատի առնուեց IX-րդ որբանոցը, որտեղ մի երկու շաբաթ մնալուց յետոյ ուղարկւում էին միւս որբանոցները։ Նոյն այս ձևով առանձնացրինք գլխի վէրք ունեցողներին Է. որ-

*) Իւրաքանչիւր որբի յատկացած է օրական մէկ բաժակ կաթ կամ մածուն, 2 գրվ. հաց և կէս գրվ. միս։

բանոցում, որը իբրև յամառ և ուշ բժշկելի հիւանդութիւն դեռևս ցանկալի արդիւնք չէ տուել: Իսկ քոս այժմ համարեա թէ վերջացած է. մնում է միայն 37 հոգի, որոնցից խիստ քոս ունին միայն 2-ը, մայիսի 21-ին եկած որբերից:

Բացի վերոյիշեալ հիւանդութիւններից, մարտ, ապրիլ և մայիս ամիսների ընթացքում, որբերից հիւանդանոցներն են մտել 201, որոնք ունէին զանազան ներքին հիւանդութիւններ: Սոցանից առողջացաւ 145 հոգի, մեռել են 3-ը, և այժմ հիւանդանոցներում կան 53 հոգի, որից 10-ը հոգին գլխի խիստ վէրք ունեցողներ են: Բժշկական օգնութեան համար որբանոցները ունեն իրենց յատուկ հիւանդանոցը և բժիշկը:

Հետևեալ տախտակը ցոյց է տալիս, թէ սոյն տարուայ յունուարի 1-ից մինչև յունիսի 1-ը ինչպիսի թուական փոփոխութիւններ են տեղի ունեցել որբերի մէջ և թէ առ 1-ն յունիսի քանի որբեր կան որբանոցներում:

| Ամիսներ | Որբերի թիւը | Ընդունուել են | Ծնողներին տրուել են | Ուղարկւել են գիւղ. | Իրենց մահ-վան. ուղ. թիֆից. | Անյայտացել է | Մեռել են |
|---|---|---|---|---|---|---|---|
| Յունուար | 817 | 8 | 18 | — | — | — | 3 |
| Փետրուար | 804 | 7 | 21 | — | 1 | — | 1 |
| Մարտ | 788 | 28 | 22 | 52 | — | — | 1 |
| Ապրիլ | 741 | — | 4 | — | — | — | — |
| Մայիս | 737 | 112 | 10 | 30 | 7 | 1 | 3 |
| Ընդամէնը | — | 155 | 76 | 82 | 8 | 1 | 8 |
| առ 1-ն Յունիսի | 798 հոգի | | | | | | |

Այս 798 որբ ու որբուհիները, յունիսի 1-ին տեղաւորուած էին 9 որբանոցում:

| Որբանոցներ | Որբերի թիւը | Տղայ | Աղջիկ |
|---|---|---|---|
| Ա. | 139 | 51 | 88 |
| Բ. | 174 | 63 | 111 |
| Գ. | 50 | 50 | — |
| Դ. | 97 | 60 | 37 |
| Ե. | 65 | 31 | 34 |
| Զ. | 51 | 18 | 33 |
| Է. | 64 | 27 | 37 |
| Ը. | 42 | 42 | — |
| Թ. | 64 | 24 | 40 |
| Հիւանդանոցներում | 52 | 27 | 25 |
| Ընդամէնը | 798 | 393 | 405 |

Օգտուելով Դիլիջանի առողջարար օդից և յարմարութիւններից, որոշել ենք ամառը թուլակազմ երեխաներին հաւաքել մի որբանոցում, անտառում, առանձին ուշադրութիւն դարձնելով նրանց սնունդի վրայ. բացի այդ յունիսին բացուելու է նոր Ժ. որբանոց, որի շէնքը և կահաւորութիւնը արդէն պատրաստ է, որտեղ տեղաւորելու ենք հասակաւոր աղջիկներ, որով կը բացուեն ազատ տեղեր և հնարաւորութիւն կունենանք Դիլիջանի որբանոցներում տեղաւորել 50—60 նոր որբ, որոնց սպասում ենք մօտ ապագայում:

Առանձնացնելու ենք նաև փոքր 3—7 տարեկան որբերին Զ. որբանոցում:

Դպրոցներում պարապմունքները դադարեցին յունիսի 8-ին: Շատ ցանկալի էր որբանոցներում կազմակերպել աշխատանքձեռարուեստ և օրական 2—3 ժամ դաս նոյն ուսուցիչների դասաւանդութեամբ: Անհրաժեշտ է օր առաջ սկսել այդ գործը:

Ամառնային աշխատանքով պարապելու են 30—40 մեծ որբ տղաներ, որոնք աշխատելու են ուսուցչի ղեկավարութեամբ. այդ նպատակով կապալով առնուած է 5 դեսեատին ագարակի համար, որոնք ապրելու են հենց այնտեղ վրաններում, ուր մեծ քանակութեամբ ցանել են գետնախնձոր, լոբի, կաղամբ և այլն, իբրև ձմեռուայ պաշար որբանոցների համար:

Այժմ անչափ զգացւում է չուտերի պակասութիւնը: Տեղական զօվ կլիման և այլ անյարմարութիւններ թոյլ չեն տալիս, Թիֆլիսի որբանոցների օրինակով, ամառը երեխաներին բոբիկ թողնել. յաճախակի անձրևները, մի քանի շէնքերի անյարմարութիւնները կարող են վնասակար ազդեցութիւն ունենալ երեխաների առողջութեան վրայ, եթէ ամառը բոբիկ թողնենք:

Պետրոս Այվազեան

## ԴԻԼԻՋԱՆԸ ԲՈՒԺԱՎԱՅՐ (ԿՈՒՐՈՐՏ)

Դիլիջանը, իբրև գեղեցիկ դիրք, կլիմայ և լաւ հանքային բուժարար ջրեր ունեցող, առանձին ուշադրութեան արժանի է: Նորերս Բուժավայրական - ընկերութիւնն ուսումնասիրելով մեր Կովկասի հանքային ջրերը, կլիմայական պայմանները զանազան վայրերի, եկել է այն եզրակացութեան, որ Դիլիջանը ունի շատ մեծ ապագայ՝ թէ կլիմայի և թէ հանքային ջրերի կողմից:

Դիլիջանը գտնւում է Ղազախի գաւառի լեռնային մասում, Նոր Բայազէտի, Ալէքսանդրապոլի գաւառների սահմանում, գտնւում է 4,200 ոտ բարձրութեան վրայ, համարեա Աբասթումանի բարձրութեան հաւասար: Ընկած է ձորում, որի միջով անցնում է Դիլիջանի վտակը, որը գոյանում է՝ Գոլովինկա, Նիկիտինկա և Կոշտոզան ջրերից: Դիլիջանից երեք խճուղի տանում են Աղստաֆա, Երևան և Ղարաքիլիսա. վերջինից հեռու է 37 վերստ և Աղստաֆայից 72 վերստ: Դիլիջանը շրջապատուած է անտառներով, որոնց մէջ կան բաւականաչափ մշտադալար սոճիներ (сосна), մանաւանդ գիւղի մօտերքում:

Դիլիջանը բաղկացած է երկու գիւղից՝ հայոց և մոլոկաններից: Հայոցը գտնւում է Աղստաֆա գետի աջ կողմում, իսկ մոլոկաններինը, Սլաբոդկան՝ ձախ: Հայ գիւղը աւելի բազմամարդ է. այստեղ գտնւում են պաշտօնական հաստատութիւնները, հայ և ռուս եկեղեցիները, պոստ-հեռագրատունը, նախկին զինուորական հիւանդանոցը, ակումբները, շուկան և այլն: Գտնուելով լանջավայրում, որը ծածկուած է անտառներով, ունի բաւական յարմար ամառանոցային տներ, որոնք գտնւում են գիւղի միջով անցնող խճուղու երկու կողմում: Մոլոկանների մասը աւելի ցածր է և գետեղուած է Աղստաֆայի ձախ ափին, հարթ տարածութեան վրայ, նորա միջով անցնող խճուղու երկու կողմերում: Առաջ Դիլիջանում կային բաւական զօրք, որոնց համար շինուած են զօրանոցներ հայկական մասի հանդէպ՝ Աղստաֆա գետի ձախ ափին:

## ԿԼԻՄԱՅ

Թէև կլիմայի մասին չը կան գիտական հետազօտութիւններ, բայց ընդհանրացած համոզմունք է, որ շատ առողջարար է այդ կլիման, որովհետև ազգարնակութիւնը բարձրահասակ, գեղեցիկ և առողջ է, անում է շարունակ, իսկ տարափոխիկ հիւանդութիւն սակաւ է և այլն:

Միակ բժշկական դիտողութիւնը մինչև այժմ արել է յարգելի բժ. Օ. Մ[illegible]ք-Նուբարեանը՝ 4 ամառ անցկացնելով Դիլիջանում: Ահա [illegible] կարծիքը. «Սաստիկ քամիներ չըկան Դիլիջանում, շնորհիւ շրջապատի լեռների: Տարեկան միջին ամպերոտութիւն [illegible] է Աբասթումանին: 6.309 չափաւոր է շնորհիւ [illegible] բաւականութեան և Սևանայ լճի մօտիկութեան... Անձր[illegible] լինում են գլխաւորապէս [illegible] և յունիս ամսի սկզբներ[illegible]: Արևոտակային օրեր ամառը շատ են լինում. խոնաւութեան [illegible] չափաւոր է: Դիլիջանի գետինը աւազային լինելով, անձր[illegible] ժամանակ խոնաւ ծծում է, ուստի ցեխ համարեա չի լին[illegible], մանաւանդ որ՝ շնորհիւ լանջային դիրքի՝ անձրևի ջուրը [illegible] ցած է սահում դէպի Աղստաֆա գետը, մաքրելով գիւղը:

## ՀԱՆՔԱՅԻՆ ՋՐԵՐ

Շատ հետաքրքրական են գիտական այն տեղեկութիւնները, որ արել է վերջերս Կովկասի Բուժավայրական ընկերութիւնը, շնորհիւ յարգելի Ս. Ս. Յարութիւնեանցի և ինժեներ Եարալեանցի։

Յայտնի էր, որ Դիլիջանում կան հանքային ջրեր, որոնցից օգտւում էին հովեկները և դիլիջանցիք, բայց՝ թէ որ աստիճանի բուժարար են և ինչ հիւանդութեանց դէմ, առանց մասնագիտական քիմիական վերլուծութեան (անալիզ), չէր կարելի որոշ գաղափար կազմել։

Վերոյիշեալ ընկերութեան քարտուղար պ. Սմիրնովի զեկուցագրից իմանում ենք.

ա) Բլանչայի վրայ՝ Դիլիջանից 6 վերստ հեռու՝ Ծիրանաքարի խաւից (Порфирной породы) բղխում է հանքային ջուր, որի քանակութիւնը (дебитъ) հասնում է 24 ժամում 4160 լիտրի, 11° տաքութեան աստիճանի։ Այդ ջրի մէջ կայ բաւականաչափ ազատ ածխաթթու։ Ըստ քիմիկոս Մէշկովի հետազօտութեան, այդ ջուրը իր բովանդակութեամբ՝ համարւում է ածխաթթուալկալային (углекисло-щелочный), նման Բորժոմի, Էմսի, Ֆաչինգէնի։ Ահա մէկ փոքրիկ ադիւսակ՝

| | Уголекисл. натр. Երկածխաթ. նատր | Хлор. натр. Խլորեան նատր |
|---|---|---|
| Բորժոմ, Եւգէնեվսկի աղբիւր | 4,82164 | 0,65604 |
| » Եկատերինինսկի | 4.72016 | 0,62291 |
| Ֆաչինգին (Պրուսիայում) | 3.3932 | 0,6209 |
| Օբերզալցբրուննեն | 2,1729 | 0,1632 |
| Էմս Կրէնխին | 1,9891 | 0,9772 |
| Բլանչայի աղբիւր | 2,8294 | 0,3896 |

Դժբախտաբար՝ այդ հիանալի աղբիւրի ջրի քանակը սակաւ է, բայց բաւական է Դիլիջանի հիւանդների համար։

բ) Միւս աղբիւրը գտնւում է Ֆրոլովի բալկում (Фролова балка), գետակի ափի մօտ և բղխում է երկու տեղից. նրա քանակը շատ մեծ է՝ 82,740 լիտր, 16° տեմպերատուրի։ Թողնում ենք քիմիական մանրամասնութիւնները։ Այդ ջուրը ածխաթթուակրային ջրերից (углекисло-щелочный) է. ներս ընդունելու համար՝ բնական դրութեան մէջ՝ անյարմար է, բայց շնորհիւ մեծ քանակութեան ածխաթթուի օգտակար կարելի է համարել վաննաների համար։ Նշանակում է՝ հռչակաւոր Հաուզէյմի և Նարզանի ջրերի նշանակութիւնն ունի վաննաների գործադրութեան տեսակէտից։ Այս ջուրը, որը գտնւում է Աղստաֆա գետի ափում, Դիլիջանից 8 վերստ հեռու, կարելի է բերել Դիլիջան խողովակներով վաննաների համար։

## ԴԻԼԻՋԱՆԻ ԲՈՒԺԱԿԱՆ ՆՇԱՆԱԿՈՒԹԻՒՆԸ

Ղազախի գաւառի տափաստանի բնակչութիւնը ամառը չունելով Դիլիջանին շատ մօտիկ սարերը, միշտ օգտւում է, մանաւանդ բէկերը և ունևոր դասակարգը, Դիլիջանի կլիմայից, մանաւանդ ջերմախտաւորները (малярія)։ Դիլիջան գալիս են և Երևանի նահանգի տափաստանից ջերմախտաւորներ մեծ քանակութեամբ։ Բայց սակաւ չեն հովեկներ և քաղաքներից՝ Թիֆլիսից, Բագուից, Ալէքսանդրապոլից և այլն։

Բժ. Մելիք-Նուբարեանը, որը 4 ամառ անցէ կացրել Դիլիջանում և ունեցել է հարուստ տուեալներ՝ եկել է այն եզրակացութեան, որ այդ բուժավայրը՝ մանաւանդ յանձնարարելի է երեխաների համար։ Հիւանդ երեխաներ նա ունեցել է Բագուայ Մարդասիրական ընկերութեան և Նաւթ-Արդիւնաբերական ընկերութեան կողմից ուղարկուած տուբերկուլոզեան՝ թէ Թիֆլիսից և թէ Երևանից. նոյնպէս Հայոց Բ. Ընկ. ապաստարանից. ուրեմն ունեցել է մեծ պաշար դիտողութիւնների։ Հետազօտութեամբ մի քանի երեխաների արեան քննութիւնից երևացել է, որ կարմիր գնդակների քանակը բարձրացել է 3 միլիոնից մինչև 3.800,000, իսկ գեմոլոբէնը 60—82°։ Մի քանիսների կշիռը երկու ամսում աւելացել է 25 գրուանքայ։ Տուբերկուլեզ ունեցողների մասին յիշեալ բժշկի կարծիքը այնքան էլ դրական չէ։ Ահա ինչու նոյն բժիշկը առաջարկում է Դիլիջանը համարել շատ օգտաւէտ բուժավայր՝ երեխայոց, սակաւ արիւն ունեցողների, տենդոտների (մալեարիկների), թոյլ կուրծք և ստամոքս-աղիքային հիւանդութիւն ունեցողների համար։

Յունիս ամսի 11-ին Փոխարքայի դիւանատանը կայացաւ Բուժավայրերի ընկերութեան նիստը բժշկական վարչութեան գլխաւորի՝ Ֆիխների նախագահութեամբ Դիլիջանի մասին։ Մրտքերի երկար փոխանակութիւնից յետոյ, ժողովը եկաւ այն եզրակացութեան, որ Դիլիջանը արժանի է մեծ ուշադրութեան և ընդունելով բժ. Մելիք-Նուբարեանի և Դիլիջանի մասնաժողովի նախագահ՝ Ս. Ս. Յարութիւնեանի առաջարկութիւնները՝ որոշեց հետևեալը.

Ա. Դիլիջանն առաջարկել վերոյիշեալ հիւանդների համար շատ յարմար բուժավայր, բայց ոչ հիւծախտաւորների, որովհետև կարևոր յարմարութիւններ չկան այդ վերջինների համար։

Բ. Խնդրել օրինական ճանապարհով՝ համարել Դիլիջանի հասարակական նշանակութիւնը։

Գ. Նոյն ճանապարհով արգելել անտառների ոչնչացումը, որ այժմ կատարւում է անխնայ։

Դ. Խնդրել յատկացնել 350 դեսեատին արքունական հող Դիլիջանում ամարանոցներ շինելու համար և կամ կապալով 99 տարի ժամանակով կամ սեփականութեան իրաւունքով։

Ե. Խնդրել, որ հանքային ջրերը շահագործելու համար իրաւունք տրուի։

Զ. Որոշուեց մի համար «Курортн. Вѣстникъ» նուիրել Դիլիջանի ուսումնասիրութեան։

Բժ. Բ. Աղասարեան

## ՁԵՌԱԳՈՐԾԻ ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍ

### ԻՇԽ. Ս. Վ. ԱՐՂՈՒԹԵԱՆԻ ԴԱՍԸՆԹԱՑՔՆԵՐՈՒՄ

Ֆրէօբելեան դասընթացքների հիմնադիրն մեզնում իշխանուհի Ս. Վ. Արղութեան Երկայնաբազուկն է, որ ունի Թիֆլիսում մասնաւոր պրոգիմնազիա և մանկական պարտէզ։

Այդ հիմնարկութեան կից նա բացել է Ֆրէօբելեան դասընթացքներում ձեռագործի բաժանմունք։

Ձեռագործների իրերից նա նորերս կազմակերպեց մի հետաքրքրական ցուցահանդէս։

Ցուցահանդէսը զետեղուած է մի մեծ դահլիճում։

Պատերից կախած էին մեծ մանկավարժների կամ այն փիլիսոփաների պատկերները, որոնք մեծ զարկ են տուել մանկավարժութեան։

Սոքա են—Ժ. Ժ. Ռուսսօ (1712—1782) շուէյցարացի-ֆրանսացի, Ջոն Լոկկ (1652—1704) անգլիացի, Ֆրիդրիխ Ֆրէբէլ (1782—1825) գերմանացի, որ այգեպանութիւնն ընդունում է մանկավարժական անհրաժեշտ մի առարկայ. Պեստալոցցի (1748—1127) շուէյցարացի, որի շնորհիւ փողոցային երեխաները մի ժամանակ դարձել էին կարգին մարդ և վերջապէս առաս ուսուցչապետ գերմանական ծագումով Լէօգաֆա (1662)։

Ցուցահանդէսի պատկերը նկարագրելուց առաջ նախ մի քանի խօսք Ֆրէօբէլեան դասընթացքների մասին։

Դասընթացքը շարունակւում է 9 ամիս՝ ամենայն օր ժամի 5—7 երեկոյեան. աւանդւում են մանկավարժական հոգեբանութիւն գործնականապէս երեխաների հետ, մարդակազմութիւն (անատօմիա), ձեռագործելու արուեստը, այգեպանութիւնը և այլն։

Ունկնդիրները երեք կարգի են բաժանուած—առաջին կար-

գին պատկանում են 8, 7 և 6 դասատուն աւարտածներ, որոնք ստանում են դպրոց բանալու իրաւունք. երկրորդ կարգին պատկանում են դպրոցական աւելի պակաս ցէնզ ունեցողներ, որոնք դասընթացքն աւարտելուց յետոյ ստանում են իրաւունք մանկական պարտէզ բանալու և կարող են լինել այդ այգեպանուհիների օգնականներ։ Վերջապէս երրորդ կարգին պատկանում են նրանք, որոնք չունենալով ոչ մի ցէնզ, ստանում են ձեռագործ ուսուցանելու իրաւունքը։

Այդ դասընթացքների գործնական արդիւնքը արտայայտուեց ձեռագործութեան արուեստագիտութեամբ, որի ցուցահանդէսը մենք տեսանք սոյն յունիսի 13-ին։

Ներկայ էին իշխանուհու բազմաթիւ աշակերտուհիներ, վարժուհիներ, մանկական պարտէզների կառավարչուհիներ և ուրիշ այցելուներ։

Իշխանուհին մի համառօտ դասախօսութեամբ բացատրեց հանդիսականներին ցուցահանդէսի նշանակութիւնը, ցոյց տալով առանձին առանձին ձեռագործներ։

Ցուցահանդէսի նպատակն է, ասում էր իշխանուհի Արղութեանը, ցոյց տալ դաստիարակներին և ծնողներին, որ երեխաներին կարելի է զբաղեցնել, կրթել առանց ոչինչ ծախսելու, գործածելով «դ է ն գ ց ե լ ու» չնչին մնացորդները, հնացած իրերը։

Ցուցահանդէսում կան այնպիսի ձեռագործներ, որոնք մշակուած են... ծխախոտի ծայրերից կամ լուցկու մնացորդներից և այլն, որոնցից կարելի է պատրաստել պիտանի առարկաներ. օրինակ, մեքենայով գործած «ջեջիմները»։

Ահա խաւաքարտից (կարտոնից) շինած տուփեր, երկրաչափական ձևեր ևայլն։

Անհամար և բազմազան էին այն ձեռագործները, որոնք դրուած էին մեր առջև ցուցահանդէսում։ Բոլորն էլ շինուած են լուցկու մնացորդներից, սիգարի և ծխախոտի ծայրերից, կոճակներից, կապերից, քարերից, հնդկացորենից, խցաններից, ճախարակներից, քաղցրաւենիկ փաթաթելու թղթերից և այլն։

Ահա մի կոյժ, գեղեցիկ և ճոխ զարդարուած, որ ծածկում էին հնդկացորենով և սիսեռով։ Ահա մի պատկեր շրջանակով, որ ծածկուած է ծեծուած գոյնզգոյն ապակով, իսկ պատկերը հիւսուած է գոյնզգոյն բամբակից... Ահա մի մահուդի կտոր, որով մաքրում են սեղանակները. նա գործուած է ձեռքով մեքենայի վրայ... «դ է ն գ ց ե լ ու» կտորներից։ Ահա երկրաչափական ձև ունեցող զարդեր, որոնց կաղապար են տուել երեխաները, թուղթը զանազան կերպ ծալելով։

Ահա մի սափոր, որ նախ մոմի կրակով սևացրած է, յետոյ փայտի ծայրով նկարած, իսկ յետոյ ջրի մէջ դրած, և ամբողջովին ծածկուած լաքով։

Այս բոլոր իրերը երեխաների ձեռագործ են «դ է ն գ ց ե լ ու» նիւթերից. բոլորն էլ պիտանի և ճաշակը զարգացնող գեղեցիկ իրեր։

Ահա համարակալներ շրջանակներով, կժեր, պատկերներ, վազաներ և այլն։

Խորհուրդ կը տանք մեր ուսումնարանների, որբանոցների վարժուհիներին և կառավարչուհիներին՝ սովորէին այդ ձեռագործութեան արուեստը, և իրենց սաներին սովորեցնէին։

Երեխաների համար աժան խաղալիկներ շինելով են զբաղուած և գերմանացիք, որոնք կարողացան կարճ միջոցում իրանց այդ արդիւնաբերութեամբ լցնել նոյն իսկ Պարիզի շուկաները։

Ցանկալի և նպատակայարմար կը լինէր, որ պատրաստուէին շրջիկ ուսուցիչներ և մեր «դ է ն գ ց ե լ ու» նիւթերից պիտանի ձեռագործների արուեստագիտութիւնը տարածէին մեր գիւղաքաղաքներում և գիւղերում։

Այդ արուեստի դաստիարակչական և կրթական նշանակութիւնը երեխաների համար մեծ է. նրանց մանկական հասակում կը զարգանայ սէր դէպի աշխատանքը, մանաւանդ որ այդպիսով կը բացուի և տնտեսական մի աղբիւրի դուռ նոցա համար։

Ցանկանում ենք բոլոր սրտով յաջողութիւն յարգելի եռանդուն իշխանուհի Ս. Վ. Արղութեանի նախաձեռնութեան, որ այնքան կրթիչ և օգտակար է։

Տ. Աթարէգեանց

## ՊՈՒԼԱՆԸԳ-ՄԱՆԱԶԿԵՐՏԸ ՄՈՌԱՑՈՒԱԾ

Թրքահայաստանի մէջ կարծեմ չկայ գաւառ, որ Պուլանըգ-Մանազկերտի չափ չարիքներ տեսած լինի թէ անցեալում և թէ ներկայումս։

Ռուսական քաջարի բանակը Մուշ-Սասունի լեռներն անցնելով, պահ մի կարծեցինք թէ հայի դարաւոր արհաւիրքը անցած է։ Գաւառի աշխատող ձեռքերից շատերը թափուեցան այնտեղ՝ վերսկսելու իրենց բեղուն աշխատանքը, վերականգնելու հիմնայատակ քանդուած օճախը.—սակայն յուսախաբ եղանք։

Ահա մէկը այդ աշխատող ձեռքերից՝ կոփեցի Օհան Գրիգորեան, որ երկու ամիս առաջ անցած էր հայրենիք՝ Պուլանըգ՝ տեսնելու՝ մի տարի առաջ թողած հայրենի լեռներն ու դաշտը, կարկատելու աւերուած բոյնը։

Օհանը տեղի աննպաստ պայմանների բերմամբ չկարողանալով իր պահանջներին գոհացում գտնել, յունիսի 8-ին վերադարձաւ տեղս։ Ականատեսը ի միջի այլոց Պուլանըգի մասին պատմում է նոր սրտաճմլիկ դէպքեր։ Ներքին Պուլանըգի ամբողջ գիւղերը (մէջն է և կոտորուած տասնումէկ հայ գիւղեր) քրդերով լիք են. Հայդարի, Ջնդու և միւս արինարբու քրդական զինուած աշիրէթները առայժմ տէր ու տիրական են հայերից լքուած այդ վայրերին։ Պուլանըգի հիւս.-արևմուտք, Ջէրնակլի, Խոյլիբարայի լեռնաշղթաները մինչև Կուժկում, Մշոյ դաշտը մինչև Խնուսի սահմանները դեռ լիքն են Ջիպրանցի ցեղապետներով, որոնք մի քանի հազար զինուած քիւրդ բոռենիներով իշխում են այդ անմատչելի վայրերին, սարսափ ազդելով այնտեղ դիմող հայի կեանքին։

Ականատեսը պատմում էր քրդական բարբարոսութեան մի քանի եղերական դէպքերի մանրամասները, որ մէկ ամիս առաջ կատարուած է այնտեղ։

Մայիսի սկիզբներին Ջէրնակլի որջերում թագնուած հասանանցի զինուած քիւրդերը գիշերով յարձակւում են Մոլլա-Մուստաֆա գիւղում ապաստան որոնող 50-ի չափ հայերի վրայ, սպանում Մանազկերտի Նորագին գիւղացի 4 անձ։

Հասան-փաշա գիւղի շրջաններում (Մանազկերտ) մի քանի տասնեակ զինուած քրդեր յարձակւում են Դուկնուկ գիւղացի հայերի վրայ և չարաչար կերպով սպանում 2 հոգի և հեռանում։

Պուլանըգի Հաֆթ-բանկ դաշտում թագնուած քիւրդերը յարձակւում են շրջանի հայ աշխատաւորների վրայ և սպանում 5 անձ, 2 Եօնճալուեցի (Դաստեան Բարսեղի եղբօր որդուն և Կուճոյեան Բագիկ անունով մէկը), 2 Ոտնչոր և 1 Կէպոյան գիւղերից։

Ջիպրանցի աշիրէթները (կռուող քրդեր) Գարաղըլ գիւղի դիմաց, Եփրատի նորաշէն կամուրջի անցքը գոցելով, աւար են տանում մի քանի պաշարակիր սայլեր, փախցնում են թէ մարդկանց և թէ անասուններին։ Բացի այդ դեռ երէկ էր, որ «Հորիզոն»ի № 120-ում, պ. Բոչարեանը գրում էր Ջէրնակլի 3,000 զինուած քրդերի յարձակումը խաղաղ բնակչութեան վրայ. սպանուած է 9, վիրաւորուած՝ 12 հոգի և յափշտակուած 40 գոմէշ։

Ահա մի գաւառ, որ բոլորովին անուշադրութեան է մատնուած։

Մի ուրիշ ցաւ ևս։

Պուլանըգ-Մանազկերտում ապաստանող հատ ու կտոր հայերը սովի և վախի ճիրաններում տառապում են. մեր ազգային մարմինները այդ բեղմնաւոր գաւառի վերաշինութեան գործի համար տակաւին մատը մատին չեն տուել. այնտեղ գնացողը ձգուած է իր բախտին. նա չի կարող երկար ժամանակ սպասել, եթէ մի բարի ձեռք օգնութեան չհասնի։ Ինչպէս յայտնի է, նախորդ տարուայ

ցանքսերը մնում են առանց քաղելու, կայ առատ խոտ, բայց քաղելու համար չկայ գերանդի, չկայ լծկան անասուն, չկայ նոյն իսկ ղեկավար մարմին, որ գնացողին մղէ աշխատանքի, գործի։

Երբ Տաճկահայաստանի վերաշինութեան հարցը սկսուեց արծարծուել և երբ մեր հայրենիքը ազգային մարմինների լուրջ ուշադրութեան առարկայ դարձաւ, պահ մի կարծեցինք թէ Գուլանըգ-Մանազկերտ գաւառներն ևս, որ զուտ երկրագործական երկիր են, հարուստ հողերով և բնական բերքերով, մէկնումէկի հոգացողութեան առարկայ պիտի դառնայ անշուշտ. սակայն ի զուր, մեր ակնկալութիւնները ի դերև ելան։ Գուլանըգի ազատուած 16 կտոր գիւղերի մօտ 28,000 հայ բնակչութիւնը այժմ այստեղ հայրենիքի կարօտով ակնապիշ սպասում է, մինչդեռ անդին գնացողները, սովի և վախի սարսափի տակ իրենց օրերն են հաշւում։

Եթէ մի մխիթարական բան կայ ի դիտութիւն հայրենակիցների հաղորդելու, այդ այն է, որ Վերի Գուլանըգի այն գիւղերը, որոնք հասարակաց ճանապարհից դուրս են, բոլորովին անաղարտ են մնացել։ Ականատեսը ի միջի այլոց Կոփի շէնքերի մասին տալիս էր նպաստաւոր տեղեկութիւններ։

Գուլանըգցի Կարապետ

12 յունիսի 1916.
Բարուանսարա

# ԱԼԱՇԿԵՐՏԻ ՇՐՋԱՆ

## ՀԱՅ. ԿԵՆՏ. ԿՈՄԻՏԷԻ ՆԻՍՏԸ

Հ. Կենտ. Կոմիտէի և Քաղաքների Միութեան լիազօր Օթարեանը, վերադառնալով Ալաշկերտից տուեց հետևեալ զեկուցումը Ալաշկերտի շրջանի հայերի դրութեան մասին։

Ալաշկերտի հովիտը քանիցս բեմ է դարձել ջարդերի, փախուստների, նահանջների և վերաբնակութեան։ Կան գիւղեր, որոնք իսպառ ջնջուած են, ինչպէս Զետկան, Խասոուր և Մոլլա-Սուլէյման։

Ալաշկերտի հովիտը այժմ ծածկւում է հետըզհետէ հայ բնակչութեամբ, որի թիւը հասնում է ներկայումս մօտ 6000 հոգու՝ բաղկացած գլխաւորապէս աշխատանքի ընդունակ արական սեռից, մինչդեռ կանայք ու երեխաները մնում են Կովկասում։

Այդ բնակչութիւնը հաստատուել է մօտ 25 հայ գիւղերում, որոնք դեռ ևս աւերակների տպաւորութիւն են թողնում։ Գիւղացիները ցանել են 300-400 հազար պուդ հացահատիկ։ Աւելի շատ կարող էին ցանել, եթէ աւելի մեծ չափով օգնութիւն ստացած լինէին։ Եթէ լրացրած լինէին նրանց գործիքի և սերմացուի պակասը, Ալաշկերտի հովիտը կարող էր տալ այս ամառ մի քանի միլիոն պուդ հացահատիկ։

Այդ հանգամանքը պիտի ի նկատի ունենան, դոնեա ապագայի համար, հայ կազմակերպութիւններն ու իշխանութիւնը։ Շատ կարևոր է, որ փախստականների վերադարձը և նրանց ընդունելու խնդիրը այժմեան անորոշ դրութիւնից ազատուէր ու հեռացուէին ներկայումս տիրող խոչընդոտները։ Վերադարձը կատարուած է գաղտագողի և ոչ ոք վստահ չէ, որ կարող է մնալ իր տանը ու մշակել իր հողը։

—

Հայկ. Կենտր. Կոմիտէի վերջին, 21-ն յունիսի կայացած նիստի որոշումներից։

Ի նկատի ունենալով Ալաշկերտի աննպաստ պայմանները, որ անհնարին է մեծ քանակութեամբ որբեր պահելը այնտեղ, այդ իսկ պատճառով որոշուեց սահմանափակել որբերի թիւը շուրջ 100—150 հոգով, իսկ մնացեալ 180—200 հոգուն տեղափոխել Երևանի շրջանը։

* * *

Բժիշկ Կրեսսիի առաջարկութեամբ որոշուեց հիմնել Ալաշկերտում մի հիւանդանոց փախստականների համար. իսկ Ալաշկերտի որբանոցի համար գնել կթան կովեր ու ոչխարներ, որպիսի նպատակի համար որոշուեց յատկացնել մի հազար ռուբլի (1000 ռ.)։

* * *

Գաղթականական դպրոցների 28 ուսուցիչների համար որոշուեց տալ յունիս ամսուայ ռոճիկները՝ 840 ռուբլի։

# ԳԱՒԱՌ

ԹԵՂԱՒ.—Յունիսի 5-ին, կիրակի, տեղի ունեցաւ Թեղաւի հայոց ծխական դպրոցի տարեվերջի հանդէսը. աւարտեցին 12 աշակերտուհի և 1 աշակերտ։ Կարդացուեց մի հետաքրքրական տեղեկագիր։ 162 աշակերտից միայն 3-ի ծնողքը միջնակարգ կրթութիւն ունէին. 70 տոկոսն անգրագէտ և մի նոյնչափ տոկոս էլ չքաւոր։ Ահա թէ ինչպիսի պատկեր է ներկայացնում Վրաստանի հայութեան կենտրոնը—անգրագէտ և չքաւոր—էլ չենք խօսում գիւղական շրջանների մասին, ուր ունեւորի և գրագէտի (այն էլ հայոց լեզուի գրագէտի) Դիոգենեան լապտերով պէտք է որոնել։ Եղան գեղեցիկ և յուզիչ արտասանութիւններ և բանախօսութիւններ։ Ժողովուրդը գոհ և ուրախ բաժանուեց։ Մի քանի օր առաջ էլ տեղի էր ունեցած Ազգային հերոս Բեռու մահուան սգահանդէսը մասնակցութեամբ տեղւոյս զինուորական դպրոցի 70-ից աւելի հայ աշակերտների։ Խօսեց հայոց լեզուի ուսուցիչը. ամբողջ բազմութիւնը՝ նոյնիսկ վրացախօսները, լաց էին լինում։ Շատերը հայախօսներին էին մօտենում, նրանցից մի երկու բառ իմանալու համար։ Միևնոյն ընթացքն է ցոյց տուել տեղւոյս օտարախօս հայութիւնը նաև Էրզրումի գրաւման, Սաթոյի մահուան և Նալբանդեանի յիսնամեակի առթիւ կատարուած սգահանդէսներին և այլ հանդէսների ու հայոց գրականութեան վերաբերող դասախօսութիւններին։ Այդ հայութիւնը ցոյց է տուել, թէ եթէ լեզուով օտար է, բայց իր սիրտն ու հոգին նոյնչափ զգայնութեամբ գիտէ թրթռալ հայութեան ապրած բոլոր վշտերով և ուրախութիւններովը։

Ս. Յ.

* * *

ԼԱՅԼԱՇԻ գիւղ.—Քութայիսի նահանգին է պատկանում Լայլաշի գիւղը, որ գտնւում է յիշեալ քաղաքից 60 վերստ հեռու։ Այս գիւղի բնակիչները վրացի, հրէայ և հայ են. վերջիններիս քանակը հասնում է մօտաւորապէս 40—50 ծուխի, որոնք բնաւ չգիտեն իրենց մայրենի լեզուն։ Հայ երեխաները սովորում են վրաց երկդասեան դպրոցում։ Նրանց ծնողները մեծ ցանկութիւն ունեն ունենալ ծխական դպրոց և մեծ ջանք են գործ դնում այս գործը իրագործելու, բայց տնտեսապէս այնպիսի դրութեան մէջ են գտնւում, որ իրենց միջոցներով չեն կարողանում այդ անել։ Բարեգործ. Ընկերութեան և այլ կուլտուրական հիմնարկութիւնների ուշադրութիւնն ենք հրաւիրում, որ հոգան այդ մասին, բանալով մի տարրական հայ դպրոց, որով այստեղի հայութիւնը փրկուած կը լինի վերջնականապէս ձուլուելու վտանգից։ Ժողովուրդը շատ քիչ է յաճախում հայ եկեղեցին, որի զանգերը շաբաթ հազիւ մի անգամ են ղօղանջում. ստիպուած նրանք գնում են վրաց եկեղեցի, որովհետև մեր ս. Աւետարանը չեն հասկանում։ Տարիներ առաջ տեղիս մի քանի հայ վրաց դաւանութիւն են ընդունել, օրինակ Կաճկաճեանները, որոնք մօտ 15 ծուխ դարձել են Կաճկաճաշուիլի և Ջանեանցները՝ Ջանոյաշուիլի։ Հրաւիրում ենք Հոգևոր բարձր իշխանութեան, թեմիս առաջնորդի և ազգային կուլտուրական ընկերութիւնների ուշադրութիւնը վտանգի առաջն առնելու։

Ս. Տէր-Պետրոսեանց

* * *

ՑԱՐՍԿԻԷ-ԿԱԼՈԴՑԻ.—Յունիսի 4-ին, տեղիս հայոց ծխական

*դպրոցի դահլիճում սիրողները յօգուտ ուսումնարանի տուին ներկայացում հայոց և վրաց լեզուով 3 թատրերգ.*

1. «Փաստաբանի մօտ» հ. լ.
2. «Տիմոթես լեզվի» վ. լ.
3. «Օրթաճալի քէֆը» հ. լ.

*Վերջինս անցաւ շատ յաջող. բոլոր դերասաններն ըմբռնել էին թատերգի ոգին:*

*Ներկայացմանը մասնակցում էին տ. տ. Ս. Ամեան, Գրիգորեան, պ. պ. Անանեան, Օհանջանեան, Մարկոսեան, Զաքարեան, Ամեան, Աւետիսեան և Բարսամեան:*

*Շնորհակալութեան արժանի է տ. Սիրամ Ամեանը, որը ամեն ներկայացումներին ղեկավարում է մասնակցողներին:*

*Ծախսը շատ լինելու պատճառով զուտ արդիւնք մնաց 40 ռ.*

*Մ. Մ.*

***

*ՍՈՒԼՏԱ, 26 մայիսի.—Շատ անգամ է գրուել, որ Ջաւախքի 100,000 հայ բնակչութիւնը զուրկ է ծխական դպրոցներից և տգէտ գիւղացութիւնը խարխափում է խաւարում: Մեր գիւղացին ոչ միայն դպրոցներից է զուրկ, այլ և ունի բազմակողմանի վէրքեր ու ցաւեր. ջաւախեցու տնտեսութիւնը քայքայւում է անդադար: Ախալքալաքի գիւղացին, Կարինից գաղթելու ժամանակից բնակութիւն հաստատելով Ջաւախքում, ցայսօր մազի չափ իր գիւղատնտեսութիւնը չէ փոխել նոր ձևի, չունի իր ծանր աշխատանքը դիւրացնող նոր ձևի գիւղատնտեսական գործիքներ ու մեքենաներ: Այժմ, որ պատերազմի պատճառով շատ տներում չէ մնացել աշխատող ձեռքեր, ժամանակ է և յարմար այսպիսի մի բազմահայ գաւառ մոռացութեան չը մատնել մեր ընկերութիւնների կողմից: «Հորիզոն»-ի համար 108 կարդում եմ, որ Փամբակի Դշլաղ գիւղում Թիֆլիսի Հ. Գիւղատն. և Տնայն. ընկերութիւնը իր վարձակայանն է հաստատել, ահագին օգուտ հասցրել գիւղացիներին: Հ. Գիւղատն. և Տնայն. ընկերութեան նախագահ պ. Աւետիք Սահակեանը, որ լաւ գիտէ Ջաւախքի գիւղացութեան ցաւերը, յուսանք թէ չի մոռանայ, որ մեր Ջաւախքը նոյնպէս կարօտ է այդ ընկ. օգնութեանը:*

*Արսէն քահ. Բլրցեան*

***

*ԱԽԱԼՑԽԱ, յունիսի 6-ին.—Կիրակի, ամսիս 5-ին, քաղաքիս ս. Փրկիչ եկեղեցում, պատարագից յետոյ, տեղական Հայ. կոմիտէի նախաձեռնութեամբ տեղի ունեցաւ Ռևանդուզի կռւում քաջաբար ընկած անմոռանալի Քեռու և իր զինակիցների յիշատակին հոգեհանգիստ: Եկեղեցին ծայրէ ի ծայր լի էր երկու սեռի բազմութեամբ: Դիմսեղանի վրայ դրուած էր Քեռու պատկերը գոյնզգոյն վարդերով ու կենդանի բոյսերով զարդարուած: Դիմսեղանի գլխավերևը կանգնել էր իւր սիրած ու ղեկավարած կամաւորական գնդի տեղացի յայտնի զինուորներ: Երգում էր քառաձայն երկսեռ խումբը Պօղոս Տէր-Կարապետեանի ղեկավարութեամբ: Պատարագին և հոգեհանգստի ժամանակ խօսեցին դամբանականներ: Քեռին ծանօթ ու սիրելի էր մեր ախալցխացիներին. մեր կամաւորների մեծ մասը նրա խմբի մէջ էին ծառայում, որոնք հիացմունքով են պատմում Քեռու արժանաւորութեան, քաջագործութեան և ընկերսիրութեան մասին: Ռևանդուզի կռւում իւր հետ միասին ընկած կամաւոր զինուորների որոշ մասը տեղացի կամաւորներից էին: Փառք ու պատիւ հայրենիքին նուիրուած հերոսին, հայրենիքի ազատագրման մարտիկին, որ իւր կեանքը զոհեց յանուն այդ սուրբ և վսեմ գաղափարի:*

*Ինչպէս գրել եմ, քաղաքումս հիմնուել է որբանոց 100 որբ պահելու համար: Որբախնամ Մասնախումբն արդէն որոշ պատրաստութիւններ տեսել է, որբերին ընդունելու և խնամելու համար: Առ այժմ որբերը պահւելու են քաղաքիս հայոց Եղիսաբէթեան օրիորդաց դպրոցում, մինչև որբանոցի համար յարմար բնակարան վարձելը: Յոյս ունենք, որ Ախալցխայի որբանոցը, շնորհիւ նուիրուած գործողների, որբանոցների առաջնակարգ դասին պատկանի:*

*Թ.*

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

*Կ. Հ. Բ. Ը-թիւնը շնորհակալութեամբ ստացել է յօգուտ փախստականների՝*

*—Թիֆլիսի Փոխ. Վ. Ը-եան ծառայողներից 14 ռ. 50 կ.*

***

*Իշխան. Սոֆիա Վասիլեան Արղութեան Երկայնաբազուկից Սանահնի դպրոցին նպաստ 511 ռ. 42 կ.*

***

*Ալէքսանդրիայից (Խերսոնի նահ.) Նահապետ Չխալեանից 5 ռ. 50 կ., Յ. Զօպանեանից 5 ռ., Ն. Չխալեանից 5 ռ., Մ. Տէր-Նիկողոսեանից 5 ռ., Թ. և Խ. Չխալեաններից 1-ական ռ. և Ս. Չխալեանից 2 ռ., ընդամենը 24 ռ. 50 կ.:*

***

*Թիֆլիս.—Բժ. Շահմուրադեանից հին շորեր 34 կտոր.:*

***

*Սոչուց.—Իմաստուհի Մինասեանից 33 կտոր շոր:*

***

*Սկվերայից—Երդ. հաւատ. Սահակ Մելիքսեդեկեանից 20 ռ.:*

***

*Ծ Ի Ի Դ Ե Ր*

*Կ. Հ. Բ. Ընկ. Թելաւի ճիւղի վարչութիւնը դիմելով Խորհրդին խնդրել է տալ Թելաւեցի բժիշկ Յովհաննէս Եագորեան Սիմէոնեանին մշտական անդամութեան մրցագիր, որից ստացուած է մի հարիւր ռուբլի: Խորհուրդը յարգելով միջնորդութիւնը որոշեց տալ այդ մրցագիրը:*

***

*Աստրախանի Կանանց Յանձնաժողովի հաշուով պահուող որբանոցի օգտին տ. Հռիփսիմէ Առաստամեանն ստացել է շնորհակալութեամբ պ. Շահնազարեանից 5 ռ.:*

***

*Ցարիցինից շնորհակալութեամբ ստացուած է պ. Խամբոյեանի նախաձեռնութեամբ ժողոված 335 ռ. յօգուտ հայ կամաւորների ընտանիքների: Եւ որովհետև Հայկ. Կենտ. Կոմիտէն չունի այդ նպատակին յատկացրած առանձին ֆոնդ, ուստի այս գումարն ուղարկեց Հայոց Ազգային Բիւրոյին:*

## ՎԵՐՋԻՆ ՀԵՌԱԳՐԵՐ

### ՀԱՅԿ. ԿԵՆՏՐ. ԿՈՄԻՏԷԻՆ

*Արդահան.—Մինասեանից:*

*Հրդեհը Օքրոպակերտ գիւղում ոչնչացրեց 190 տուն: Բնակիչները մնացին բացօթեայ ու քաղցած: Կան մարդկային զոհեր: Օգնութիւն են աղերսում: Ուղարկել եմ մի խումբ կամաւորներ նրանց օգնութեան: Սպասում ենք ձեր կարգադրութեան: Արդահանում ալիւր կայ: Փոխադրեցէք դրամ: Ուղարկեցէք անկողիններ, կօշիկներ և հագուստ:*

—

*115, Իսրայէլեանից:*

*Վաղը ուղարկում ենք Սարիղամիշ 100 որբ:*

—

115 (тел. отд).—Ղամարեանից։

Մուշից ուղարկուած է Ալէքսանդրապոլ 90 որբ։ Որբերին ուղեկցում են Թաւաքալեան և Մեղաւորեան։

Հարկաւոր է ուղարկել Սարիղամիշ կենտր. կոմիտ. կողմից ներկայացուցիչ որբերին ընդառաջելու։

—

Ալէքսանդրապոլից.—Խաչվանքեան քահանայից։

Յունիսի 7-ին տեղս հասան Բաշկէից—22 որբ., 8-ին Սարիղամիշից—86 որբ և 9-ին Քաղաքների Միութեան 28 որբերը։ Ընդամենը 136 որբ, որոնք զետեղուած են երեք շինութեան մէջ, կարելի է դարձեալ տեղաւորել 64 հոգի։ Սկզբնական ծախքերի և նոր որբանոցների համար անհրաժեշտ է դարձեալ 4 000 ռ.։ Խնդրեմ փոխադրէք դրամը տեղական վարչութեան անունով։ Որբերի ընդարձակ ցուցակը ուղարկում եմ պոստով։

—

Ելենովկա.—Պօղոսեանից

Գնուած է 61 եզ, որ այսօր ուղարկուեցաւ Պարոյրի հետ Երևան 28 սայլով. փոխադրեցէք փող։

—

Մուշ.—Կարա-Սաստունից

Խնուսից երէկ որբերը ճանապարհ ընկան Թաւաքալեանի առաջնորդութեամբ. խնդրում եմ անմիջապէս կարգադրէք Սարիղամիշում վագոն ստանալու համար։

—

Ելենովկա.—Պօղոսեանից.

Գնուած է 30 սայլ և 47 եզ առևտուրը յաջող է գնում. շուտով դրամ փոխադրեցէք։

—

Մուշ.—լիազօր Կարա-Սաստունից

Հարկաւոր չէ թռուցիկ խմբեր ուղարկել Խնուս և Մուշ հայ գերիների երեխաներին փնտռելու համար, որովհետև տեղումս արդէն խումբ կազմուած է։ Խնդրում եմ կարգադրեցէք անմիջապէս Մուսունում, Ղարաքիլիսայում, Դուտախում և Խնուսում բաց անել ալիւրի պահեստներ։

—

Մուշ.

Ներկայումս Մուշի և շրջանի հայերի թիւը հասել է 14,309 հոգու։ Գալիս են անընդհատ նորերը։ Ցանկալի է այստեղ բանալ մթերքների պահեստներ։

—

Էրզրում—Սարիղամիշից։

Քաղաքում գաղթականների թիւը 700 հոգի է, իսկ շրջակայ գիւղերում՝ մօտ 2,000։ Երբ Տերսիմը նուաճեն մեր զօրքերը, մօտ 6,000 հոգի հայ, որոնք պատսպարուած են քիւրդերի մօտ, կազատուեն և հաւանական է ուղևորուեն դէպի Էրզրում։

## Քրոնիկոն

Նորին Օծութիւն Ամենայն Հայոց Կաթողիկոսը, Տ. Տ. Գէորգ Ե. այսօր ժամանում է Թիֆլիս։

* * *

Պետրոգրադից պատգամաւոր Մ. Ի. Պապաջանեանը հաղորդել է Թիֆլ. քաղաքագլխին, որ Թիֆլիսի բազմարուեստեան (պոլիտեխնիկումի) բացման վերաբերեալ օրինագիծը ընդունուած է։

* * *

Հիւանդ և վիրաւոր զինուորների մասին հոգացող Յանձնաժողովը, որի նախագահն է Վրաստանի էկզարխը, բաց է անում Թիֆլիսում ապաստարան-արհեստանոց, որտեղ մեր քաջարի զինուորները, որոնք աշխատանքի անընդունակ են դարձել և զինուորական ծառայութիւնից պէտք է արձակուեն, ամեն բան պատրաստ ապաստարան-արհեստանոցում կսկսեն սովորել դերձակութիւն և կօշկակարութիւն։

* * *

Մուխրանեան կամուրջի մօտ կառուցած քաղաքային փուռը պատրաստ է և մօտ օրերս կսկսի գործել։

* * *

Վլադիկաւկազի քաղաքագլուխ Գ. Վ. Բայեր միջնորդութիւն է յարուցել բարձր իշխանութեան առջև, հեռախօս անցկացնելու Թիֆլիս-Վլադիկավկազ։ Այս առաջարկը համակրութիւն է գտել։

* * *

Նահանգական բանտի շէնքում գտնուող № 8 հիւանդանոցը ամսիս 20-ից տեղափոխուեց Գոլովինսկի պողոտայ, Արամեանի նոր տունը։

* * *

Թիֆլիսում արդէն հիմնուած է սպառողական ճաշարանի ընկերութիւնը, որը շուտով սկսելու է իր գործունէութիւնը։

* * *

Գլխաւոր լիազօրների դիւանի հաշուով մինչև յունիսի 1-ը Կովկասում փախստականների թիւն է—Ստաւրոպոլի նահանգում 5,627, Բագուի՝ 7,700, Գանձակի՝ 6,999, Թիֆլիսի՝ 7,400, Երևանի նահ.— 93,147, Սև ծովի՝ 2,048, Դաղստանի շրջ. 53, Բաթումի՝ 13,000, Կուբանի՝ 14,322, Թէրեկի՝ 3,904 և Կարսի շրջ. 32,590։

* * *

Ամենայն Հայոց Կաթողիկոսի կարգադրութեամբ Յովնանեան դպրոցի հոգաբարձութեան կազմի ընտրութիւնը յետաձգուած է։ Այդ կարգադրութիւնը հետևանք է այն 5 պատուիրակների բողոքի, որոնք ընտրութիւնները համարում էին ապօրինի, ուստի և քննութիւն կատարելու համար Կաթողիկոսը ընտրութիւնների ժամանակը յետաձգել է։

* * *

Կովկասի և Թաւրիզի ճանապարհների վարչութիւնների համաձայնութեամբ, յունիսի 20-ից պոստային գնացքներին կցուած են I և II կարգի վագոններ անընդհատ մինչև Թաւրիզ։

* * *

Կովկասի Փոխարքան իրաւունք է տուել Թիֆլիսում բանալու պետական ծառայողների սպառողական ընկերութիւն (աստիճանաւորների համագործակցութիւն) «Չինովնիկների Կոոպերատիւ» անունով։

* * *

Պետական դումայի անդամ Մ. Պապաջանեանը հեռագրել է ծերակոյտի անդամ Ներսէս Եպիսկոպոսին, որ սենատոր Միլիտինը կարգադրել է գաղթականական գործի գլխաւոր լիազօր գեներալ Թամամշեանին, որ փախստական երեխաների որբանոց-ապաստարանների համար Մեսրոպ եպիսկոպոսի տրամադրութեան տակ դրուի 250,000 ռ.։

* * *

Խմբագրութիւնս շնորհակալութեամբ ստացաւ Տիկ. Օլգա Գէնջեանի հրատարակութեամբ լոյս տեսած «Ադամեանը և նրա թարմ գերեզմանը» պատկերը (երկրորդ շարք), որի վրայ տեսնւում են՝ Ադամեանը 1884 թուականներին և նրա գերեզմանը Կ. Պոլսում։

Տ. Գէնջեանի ջանքերը առհասարակ այդ ուղղութեամբ գովելի են և քաջալերութեան արժանի։

Պատկերը տպուած է լաւ թղթի վրայ և արժէ 20 կոպ.։

* * *

*Այսօր դէպի գաւառները ուղևորուեց Կեդր. Կոմիտէի կողմից նշանակուած բոլոր որբանոցների ընդհ. տեսուչ պ. Գուրգէն Էդիլեան։*

# Արտաքին տեսութիւն

## ՏՆՏԵՍԱԿԱՆ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ

Այս տարուայ մարտ ամսին Պարիզում տեղի ունեցած համագումարում որոշում էր կայացել մօտիկ ապագայում հրաւիրել մի նոր համագումար՝ դաշնակից պետութեանց տնտեսական փոխ-յարաբերութիւնները ճշտելու և նրանց գործակցութեան և փոխադարձ աջակցութեան հիմնական սկզբունքները պարզելու համար։

Համաձայն այդ որոշման ամսիս սկզբներին Պարիզ հաւաքուեցին դաշնակից պետութեանց լիազօրները և իրենց տնտեսական յարաբերութիւնների վերաբերեալ մի շարք որոշումներ կայացրին։ Այդ որոշումները հրատարակուեցին անցեալ շաբաթ և կարելի է ասել յանկարծակի պայթած ռումբի տպաւորութիւն թողին գերմանական հասարակութեան վրայ։ Վերջինս մինչև այժմ այն կարծիքին էր, թէ տնտեսական համագումարը պէտք է զբաղուի բացառապէս պատերազմի հետ կապ ունեցող խնդիրներով կամ, ուրիշ խօսքով, նա պէտք է որոշէ այն տնտեսական միջոցները, որոնց կիրառումն անհրաժեշտ է նկատւում Գերմանիային իւր զինակիցների հետ միասին ուժասպառ անելու և պատերազմը յաղթական վախճանի հասցնելու համար։ Բայց դուրս եկաւ, որ հակառակորդ պետութիւնները միայն գերմանացիների մտածածը չեն ծրագրել, այլ և շատ վտանգաւոր բաներ։ Նրանք ծրագրել են այնպէս ամրապնդել իրենց առևտրա-արդիւնաբերական կապերը, որ պատերազմից յետոյ Գերմանիան այլևս հնարաւորութիւն չունենայ կատարելու նախկին տնտեսական գործնական թռիչքները, թռիչքներ՝ որ նրա պետական և զինուորական հզօրութեան խարիսխն էին հանդիսանում մինչև հիմա…

Համագումարի որոշումները բաժանւում են երեք խմբի. Առաջին խումբը, որ կարգաւորում է պատերազմի շրջանի տընտեսական խնդիրները, որոնց կիրառումն այլևս անկարելի պէտք է դարձնի պատերազմի շրջանում որև է առևտրական յարաբերութիւն թշնամի պետութեանց հետ՝—լինի այդ անմիջապէս թէ չէզոք երկիրների միջոցով։

Երկրորդ խմբի որոշումները վերաբերւում են պատերազմին անմիջապէս յաջորդող շրջանին, երբ դաշնակից պետութիւնները պէտք է վերածնուեն՝ առևտրական-արդիւնաբերական, երկրագործական և ծովագնացութեան տեսակէտներից։ Այս ժամանակաշրջանում, որ կարող է բաւական երկար տևել՝ դաշնակից պետութիւնները պէտք է մի կողմից իրար աջակցեն տնտեսական վերածնութեան, իսկ միւս կողմից՝ ամեն միջոց գործ դնեն, որ իրենց և թշնամի պետութեանց մէջ և վերջիններիս համար նպաստաւոր առևտրական յարաբերութիւններ չը ստեղծուեն։ Ուստի նրանք ուժեղացրած մաքսի և առհասարակ բացառիկ օրէնքների միջոցով պէտք է դժուարացնեն թշնամի պետութեանց ապրանքների ներմուծումն իրենց երկիրները և թոյլ չը պէտք է տան, որ նրանց հպատակները այս կամ այն ձևի առևտրա-արդիւնաբերական գործեր սկսեն իրենց երկրներում, ինչպէս այդ լինում էր մինչև հիմա, մանաւանդ Ռուսաստանում։

Վերջապէս երրորդ խմբի որոշումները, որ նպատակ ունեն դաշնակից պետութիւններին մշտապէս անկախ դարձնել թշնամի պետութեանց տնտեսական և ելեմտական ազդեցութիւնից՝ նախատեսում են մի շարք միջոցներ, որոնցով առաջինները պէտք է մի կողմից իրենց ներքին արդիւնաբերութիւնը զարգացնեն, իսկ միւս կողմից բացառիկ դիւրութիւններ ստեղծեն իրենց առևտրական և ելեմտական յարաբերութիւնների համար։

Առաջին խմբի որոշումները պատերազմի հրամայական պահանջն են հանդիսանում, որոնց դէմ գերմանացին ոչինչ ասել չի կարող, ի հարկէ, սակայն վերջին երկու խմբի որոշումները նըրան ուղղակի պէտք է կատաղեցնէին և կատաղեցրել են։ Այս պատերազմի հիմնաքարը տնտեսական գերիշխանութեան հարցն է եղել Գերմանիայի համար։

Անգլ-գերմանական և ռուս-գերմանական հակամարտութեանց աստառը ոչ այլ ինչ է, բայց եթէ այն, որ Գերմանիան ձգտում էր լայնացնել իր առևտրական շուկաները. իսկ Անգլիան և Ռուսաստանը արգելք էին հանդիսանում դրան։ Սակայն չը նայելով այս արգելքներին՝ Գերմանիան շնորհիւ իր անկուն եռանդի առաջնակարգ դիրք էր ստեղծել իր համար համաշխարհային շուկաներում։ Պատերազմը, նրա հաշուով, եթէ չը բարձրացնէր, չը պէտք է էլ կարողանար նսեմացնել այս դիրքը։ Սակայն Պարիզի համագումարը գալիս է տակն ու վրայ անելու այս հաշիւը։ Նա՞ այնպիսի նեղ օղակ է կազմում Գերմանիայի տնտեսական գործունէութեան առաջ, որ վերջինս պէտք է խեղդուի և նոյն իսկ մեծ պետութեան դիրքից ընկնի։

Այստեղից հասկանալի է այն վայնասունը, որ բարձրացրել է գերմանական մամուլը Պարիզի համագումարի առթիւ։ Ոչ միայն ultra ազգայնականութեան մամուլը, ինչպէս օրինակ «Hamburger Fremdenblatt»-ը, «Tazliche Rundschau», «Kölnische Zeitung», այլ և ազատամիտ և նոյն իսկ ընկերվարական մամուլը, ինչպէս «Vossische Zeitung», «Berliner Tageblatt», «Chemn scher Arbestrzeitung», «Leipziger Velkszeitung» և այլն խօսք չեն գտնում իրենց զայրոյթը արտայայտելու Պարիզի համագումարի դէմ։ «Դուք մեզ յաւիտենական կռուի մարտահրաւէր էք կարդում—Vohean! համեցէք», բացականչում է «Hamburger Fremdenblatt-ը։ «Դուք ցանկանում էք գերմանական բանուորութիւնը քաղցամահ անել, ոչնչացնելով մեր ճարտարարուեստը (ինդուստրիան) և առևտուրը—բայց իմացէք, որ այդ բանուորութիւնը մինչև որ վերջին մարդը կկռուի ձեր դէմ—սպառնում է «Chemnischer Arbeiterzeitung»-ը։ Այսպէս էլ մնացած թերթերը։ Ամենքն էլ մահուան ու կեանքի կռուի կոչ են անում ժողովրդին՝ մեկնաբանելով նըրան Պարիզի համագումարի կործանարար որոշումները։

Ա. Ջամալեան

# ՏԱՃԿԱՀԱՅԵՐ

## ԲԻԹԼԻՍԻ ՏԱՐԵԴԱՐՁԻՆ

### ԹՐՔԱԿԱՆ ԴԱԶԱՆՈՒԹԻՒՆՆԵՐԻՑ *)

Գ.

*Ձմեռուան հալուող ու մաշուող ձիւների հետ, հալուեց և մաշուեց նաև գարերից ի վեր տառապող Թշուառ հայը։ Մահամերձ ճիգերով սպասում էին գարնան գալստեան, բայց աւաղ այդ գարունը վերջին գարունն էր, որ իր յորդած գետերի ու առուների հետ խառնած հարազատների արիւններ Եփրատի հրակայական կոհակներով պիտի տանէր Պարսից ծոցը ներկելու և ովկիանոսների խորութիւններին մարդկային գազանութիւնները պատմելու։*

*Փետրուարի վերջերին, Վանի կուսակալ իտտիհատական Ճեւտէտ բէյը՝ Էնւեր բէյի փեսան՝ ինքը Պարսկաստանում եղած ժամանակ, իր թելադրումով, փոխանորդ Բաշկալէի միւթէսարրըֆ (կառավարիչ), կազմեց նոր չէտայական խմբեր։ Վանի ամբողջ ռազմամթերքը ցրուեց Թուրք ու քիւրդ ամբոխին և մարտի սկզբին սկսեց յարձակումները հայ գիւղերի վրայ։ Յարձակուեցան Թիմարի էրերին, Խաւէնց Ատնականց գիւղերի վրայ և ձեռք ընկնող տղամարդիկ սպանելուց յետոյ գիւղն ալ վառեցին։ Այսպէս քաջալերուած շարունակեցին յառաջ տանել իրենց վանդալականութիւնը, բայց տեղական ուժերը ինքնապաշտպանութեան դիմեցին. կառավարութիւնը պարտաւորուած հայերին դիմեց և հաշտարար միջնորդներով վերջ տուեց, պատճառաբանելով իբր թէ թիւրիմացութիւն է եղել և ինքը պատրաստ է վնասը 2000 լիրայ հատուցանելու։*

*Մի քանի օր յետոյ նորից կառավարութեան խորհրդով՝ չէտայական 400-ից աւելի մի խումբ յարձակուեց Վանի մօտիկ Նարաթ գիւղի վրայ ու կրկին դիմեց հայերի հաշտարար միջնորդութեանը, որպէս զի ցոյց տայ, որ խլրտումները տեղի ունենում են հակառակ իր կամքին և ոչ թէ իր թելադրութեամբ, ինչպէս արդէն նախատեսել էին հայերը։*

*Ճեւէթ բէյը, Թուրք բանակի պարտութեան միակ պատճառը հայերի վերաբերմամբ արած թելադրութիւնները, մօտիկից և վճռականօրէն իրագործելու համար, Պարսկաստանից վերադարձաւ Վան իր կեղծ-բարեկամական դիմակով։ Դիմաւորեցին թիւրքերի հետ և հայերը, հայ գործիչներից ի միջի այլոց և Վռամեանը։*

*Հէնց առաջին օրից սկսեց սերտ մտերմական յարաբերութիւնները Վռամեանի և այլ գործիչների հետ. ամէն օր ամենաքիչը օրական երկու անգամ Վռամեանին այցելում էր կամ հրաւիրում իր քով այլ և այլ նիւթերի շուրջ խորհրդակցելու պատրուակով։*

*Ապրիլի 2-ից սկսուեց բուն յարձակումները. Թրքական մի թաբուր 600 միլլիներ թնդանօթներով մէկտեղ յարձակուեցին Շատախի հայ գիւղերի վրայ։ Շատախցիները միահամուռ ինքնապաշտպանութեան դիմեցին և պաշտպանուեցին հերոսաբար։ Ճեւէթը հայ գործիչների թակարդը արդէն լարել էր վաղուց։ Իշխանին ուղարկեց որպէս հաշտարար միջնորդ, բայց կէս ճանապարհին սպանել տուեց իր երեք ընկերների հետ մէկտեղ։ Երրորդ օրը՝ խաբերայութեամբ ձերբակալեց Վռամեանին։*

*Վռամեանի ձերբակալման երրորդ օրը, ապրիլի 7-ին, Թուրքերի յարձակումով սկսուեց Վանի ինքնապաշտպանութեան կռիւը։*

*Վռամեանին ձերբակալելով, հէնց նոյն երեկոյ կառավարական շոգեմակոյկ նստեցրին և զինուորական պահակներով մէկտեղ ուղարկեցին Բիթլիսի նաւահանգիստ Դատուանը։ Երբ Վռամեանը շոգեմակոյկից դուրս էր գալիս և հաւաքուած հայ գիւղացիներին փետրաթափ թռչունների նման կծկուած է տեսնում, հայերէնով ասում է՝ «Մի տխրէք, հայը ինձպէս շատեր ունի... մենք բոլորս պէտք է մեռնենք, որ ապրողները ապրեն»։*

*Բիթլիսի դաշնակցութեան տեղական ներկայացուցիչ՝ պ. Արմենակ Ցոխիկեանը, կուսակալին մտերիմ լինելով, լսելի արաւ նրան Վռամեանի հետ տեսնուելու խնդիրքը և բանտի խոնաւ մի անկիւնում այցելեց։ Վռամեանը չէր հասկացել Թուրք կառավարութեան իժային տաքտիկը. և պատուիրում է, եթէ կառավարութիւնը ոևէ դիմումով միտք ունենայ գործիչներին ձերբակալել, պատրաստ եղէք յանձնուելու յանուն ժողովրդի փրկութեան, և խնդրում է որ նոյն իմաստով և իր յատուկ բարեւով մի նամակ գրուի Շամիրամցի ընկեր Սողոյին։ Երկու օր յետոյ մեր անզուգական գործչին ճանապարհ գցեցին Պոլիս ղրկելու պատրուակով և Բիթլիսից 30 վերստ հեռու Բոհտանի կամուրջի վրայ սպանելով գցեցին գետը։ Մինչդեռ կուսակալը մի շաբաթ վերջ Արմենակ Ցոխիկեանին յայտնեց, որ հեռագիր է ստացել թէ «Վռամեանը ապահով հասել է Դիարբէքիր»,*

*Սողոն, որ մի ամիս առաջ կառավարութեան հայերից զէնքեր հաւաքելու խժդժութիւնների պատճառով կիսափախստական էր նկատուել, Արմենակ Ցոխիկեանից ստացաւ հետեւեալ նամակը. «Սիրելի Սողոյ.. Ես տեսնուեցի Վռամեանի հետ, նրա գաղափարն էլ մեր գաղափարի նման է. կառավարութիւնը հիմի առարկում է, որ եթէ մենք խուսափողական դիրք բռնենք, մեր պատճառով ժողովրդին պիտի կոտորէ։ Եթէ նոյնիսկ կառավարութեան առաջարկը բացորոշ խաբեբայութիւն լինի, այսուամենայնիւ այստեղ կայ ժողովրդի համար մեռնելու քաջութիւն։ Մենք ուրեմն ցոյց տանք, որ ժողովրդի համար մեռնել գիտենք։*

*Գրեթէ նոյն իմաստով մի նամակ էլ ստացաւ Բիթլիսի հայոց առաջնորդարանի խառն ժողովից»։*

*Սողոն նամակները կարդալուց յետոյ՝ ուղղակի արհամարհելով մօր, կնոջ և փոքրիկ երեխաների լացն ու կոծը, գնաց Դատուան և միւտիրին ներկայացաւ։ Միւտիրը սակայն իտտիհատական խորամանկ քաղաքականութեամբ ամեն չարամտութիւն լիովին կատարելու համար, շողոքորթական և վստահալից ընդունելութեամբ բաց թողեց։ Ժողովրդի փրկութեան ելքը գտնուած էր կարծես։ Բայց այդ յուսախաբութիւնը շուտով երեւան եկաւ։*

*Վանի ինքնապաշտպանութեան կռուի սկսելիս՝ Վանի նահանգի ամբողջ հայ գիւղերը կոտորուեցին ու այրուեցին։ Վան ինքնապաշտպանութեան դերում պարզերես դուրս եկաւ։ Կամաւորներն և ռուսական զօրքը Վան և Մալազկերտ մտան։ Թուրք ու քիւրդ խուժանը ռուսների յառաջխաղացման ընդհանուր ճակատից գաղթեցին Բիթլիսի շրջան Ախլաթ, Գիւզալդարայ և Մշոյ դաշտը։*

*Թուրք կառավարութեան հրամանն էր, որ ռուսների յառաջխաղացման շրջանում բոլոր հայերը կոտորուէին։ Նահանջողները, որոնց հետ և համիդիէներ և կանոնաւոր զօրք, գերմանական կրթութիւն ստացած Թուրք սպաների հրամանատարութեան տակ, չինայելով հասակի ու սեռի, Թրքական յատուկ բարբարոսութեամբ կոտորեցին, այրեցին ու ամայացրին հայկական բոլոր գիւղերը և ծածկեցին անթաղ դիակների կոյտերով։*

*Բաւական է յիշել Շամիրամ և Դատուան գիւղերը, որոնց ականատես լինելու դժբաղդութիւնն ունեցայ։ Կին ու երեխայ կոտորուելուց ազատ լինելը դարաւոր օրէնք ընդունելով, թողել էինք գիւղը, իսկ տղամարդիկս գիշերել էինք գիւղի մօտակայ մի պատմական բլրակի վրայ։ Առաւօտեան արեւը նոր ծագելիս ձիաւորներ պաշարեցին գիւղը։ Աստուած իմ, միթէ քսաներորդ դարում այսպիսի մի ողբերգ պիտի տեղի ունենար։ Երեխաների ճիչը, մայրերի ողբն ու կոծը, ծերերի ու պառաւների մորմոքն ու կըսկիծը, հրացանների որոտը, հողաբքների հնչիւնը իրար խառնուելով՝ դժոխային համերգ էր կազմում։ Երեկոյեան, երբոր ոճրագործները հեռացան և մենք գիւղը իջանք, տեսանք կանանց ու երեխաների մեծամասնութիւնը կոտորուած. ոմանք գերուած և ոմանք ալ Դատուան գիւղ «ազատութեան վայրն» էին փա-*

*) Տես «Համբաւաբեր» № 25։

խել։ Ութսուն տարեկան, աչքերը կուրացած և տանն անդամալուծի պէս ընկած մի հօրեղբայր ունէի, որին դանակոծելով սպանելուց յետոյ, կուրծքը քարիւղով վառել էին։

Կուսակալը՝ Դատուան «ազատութեան վայր» էր հրատարակել, անողոք հարուածներից խուսափող հայ թշուառներին հաւաքելու, կոտորել տալու՝ իր հրէշաւոր նպատակին լիովին հասնելու համար։

Ախլաթի շրջանը կոտորելուց 12 օր յետոյ, մայիսի 15-ին, երբ կառավարութիւնը իմացաւ, որ կոտորուող գիւղերի բոլոր փախստականները ապաստանել էին Դատուան, Ախլաթից բերել տուեց համիդիէի հրամանատար Բեօռ Հիւսէին փաշան իւր համիդիէ գունդով, որոնք արևը ծագելիս պաշարեցին Դատուանը։ Սողոն, որ նախքան շրջանի կոտորելը հաւատացած իտտիհատականների կեղծ քաղաքականութեան ու խոստումներին՝ Դատուան էր գնացել՝ հեռագրով կուսակալից գիւղեր պաշտպանող ժանդարմաներ խնդրելու, կաշկանդուել մնացել էր այնտեղ։ Վերջին անգամ եւ քաջութեամբ մեռնելու համար Դատուանցի Դանիէլի և երկու ընկերների հետ իրենց տանից ատրճանակներով յարձակւում են զինուորների վրայ, մի քանիսին սպանելով զէնքերը վերցնում են և դիմադրում մինչև իրիկնադէմին ու ընկնում քաջաբար։ Երեք հազարից աւելի հայերի կեանքը Հիւսէյն փաշայի վոհմակի յօշոտման ենթարկուեցան։ Ի միջի այլոց յիշելու է նաև Վանեցի 72 նաւավարների չարաչար սրախողխող լինելը, որ Վանից նրանց և նրանց ընտանիքների կեանքը ազատել էին ռուսների ձեռքից, փախցնելով Դատուանը իրենց սեփական նաւերով։ Ահա թրքական բարոյականութեան կենդանի օրինակը։

(Կը շարունակուի)

Տ. Շահրաղ

# Գ․ր ա կ ա ն

## ԹԵՐԹԵՐ ԻՄ ՅԻՇՈՂՈՒԹԻՒՆՆԵՐԻՑ

## ՊԵՏՐՈՍ ԱԴԱՄԵԱՆ

I

### ՄԻ ԿԱԹԻԼ ԱՐՏԱՍՈՒՔ

Ադամեանի հօր անունը, ինչպէս գրում է Լէօն, Հերոնիմոս էր, բայց ոչ Ուսլեանը, ոչ տ ի ո ւ ր տ ի կ ի ն ը և ոչ օրիորդը չէին կարողանում արտասանել Ի ե ր ո ն ո մ ո վ ի չ բառը, ուստի իր համաձայնութեամբ նրան կանչում էին Հայրապետովիչ...

Արտիստը սիրում էր, երբ անուանում էին նրան ռուսական ձևով, իւր և հօր անուններով, մանաւանդ ռուս դերասանների և դերասանուհիների առաջ, և շատ վշտանում էր, երբ չէին կարողանում ճիշտ արտասանել հօր անունը...

—Բառարանի մէջ միթէ կարող է այնպիսի բառ լինել, որ մարդ չը կարողանայ ճշտութեամբ արտասանել, ասում էր նա յաճախ, թէպէտ ինքը ռուսերէն շատ սխալներ էր անում, որի համար կանայք միշտ նրան ծաղրում էին, թէպէտ նրա ռուսական խօսակցութեան մէջ առանձին հմայք կար...

Ես գերադասում էի այցելել Ադամեանին իր բնակարանում, կամ հանդիպել նրան հասարակական վայրերում, իսկ իմ տանը նա եղել է երկու կամ երեք անգամ, ոչ աւելի, թէպէտ ամբողջ սեզոնի ժամանակ շաբաթը մի անգամ ես տալիս էի մի ընթրիք, որին ներկայ էին լինում մշտապէս տ. Հրաչեայ իր ամուսին պ. Անտոնանի հետ, օր. օր. Մարի-Նուարդ, Երանուհի և Վերգինէ Փարազաշեան քոյրերը, տ. տ. Գարունիա-Ցագարելի, Սապարով-Աբաշիձէ, պ. պ. Մնակեան, Սանջակ, Սարդարեան—անխի այս եօթերորդ մասը և իշխան Ամատունու աջ ձեռքը։

Այդ ընթրիքներին միշտ նուագում էր յայտնի թառ ածող Վասիլ Մամիկոնեանը, իսկ գինի խմել սկսում էինք բաժակներով և վերջացնում էինք վազաներով։ Քէֆը շարունակւում էր մինչև առաւօտեան ժամի չորսը, հինգը։

Շաբաթուան ընթացքում մի ուրիշ օր հաւաքւում էինք տիկին Հրաչեայի մօտ...

Ադամեանը վայելչակազմ, ֆրակով, սպիտակ ձեռնոցը ձախ ձեռքի միայն չորս մատին ծիած, աջ ձեռքը մերկ՝ մատների ազատ շարժուածքները պահելու համար, լայն ճակատով և երկար մազերով պետական թատրոնի ընդարձակ բեմի վրայ դուրս էր լողում կուլիսներից և մի քանի վայրկեան լուռ կանգնած՝ իր դէմքի լուռ ու մունջ միմիկայով արտայայտում էր այն, ինչ որ պէտք է արտասանէր, և հասարակութիւնը հասկանում էր, թէ ինչ պէտք է արտասանէր իր սիրելի հանճարեղ դերարուեստագէտը... Ձայներ էին լսւում «Հիմի էլ լռենք»... ձայներ էին լսւում. «Թքել եմ» և դերարուեստագէտը երկու ձեռքը կողքին մեկնած՝ գլուխը բարձր, ուղիղ կանգնած՝ Քրիստոսի խաչելութիւնն էր ձևացնում և արտասանում էր՝

Հիմի էլ լռենք...

Կամ անզուսպ զայրոյթը դէմքին, կոկորդի խեղդուած, արհամարհական ձայնով, իր ամբողջ գոյութեամբ զզուած շպրտում էր բանաստեղծի խօսքերը՝

Թքել եմ քո ալ, սրից ալ վրան։

Հանճարը ելէկտրականացնում էր հասարակութեանը։ Մի տեսակ աղաղակ էր լսւում... թատրոնական դահլիճում... ինչ էր այդ աղաղակը՝ «կեցցէ», ոչ. «բրաւօ», ոչ...

Երբ ահագին շէնքը հրդեհւում է, երբ այրւում են սիւները, երբ առաստաղը և պատերը զրկւում են իրանց պատուանդաններից և բոլորը փլչում է ամպի նման անսահման դոռալով։ Ահա այդ անսահման դոռոցն էր հասարակութեան մռունչը... կայծերը շփւում էին և հրդեհ էին գոյացնում։ Բանաստեղծի երգը, նրա զայրոյթը, նրա արհամարհանքը, նրա հայրենասիրութիւնը ժողովրդի արիւնն ու մարմինն էին կազմում, հասարակութեան հոգին, հաւատը և պաշտամունք էին դառնում. և Ադամեանը կանգնած էր բեմի վրայ, ինչպէս զինուորը իր տեղում, ինչպէս նահատակ զինուորը, որ գնդակ է ընդունել իր ճակատին... Նրան կանչում էին, ստիպում էին կրկնել. բայց նա յոգնած էր, նրա ամբողջ գոյութիւնը ցնցուած էր. նա ձեռքով ցոյց էր տալիս, թէ այլևս անկարող է կրկնել, թէ կոկորդը ցամաքել է և... արհեստական դերարուեստական ձայնը, որ այդքան վարպետօրէն ստեղծել էր մեծ դերարուեստագէտը, կամաց-կամաց մաշում էր նրա կոկորդը...

Միւս օրը ես նրան ծաղրում էի՝ ծաղրով արտասանում էի՝ «Հիմի էլ լռենք»։

—Պարոն Տէր-Գրիգորեան, միայն այդքա՞ն. ես ձեզանից այլ վերաբերմունք էի սպասում...

—Եւ չէիք սխալւում, պատասխանում էի ես, առնելով նրան իմ գիրկը, իբրև մի փոքր երեխայի, այնքան թեթև էր նրա կշիռը...

Եւ նա երեխայի պէս ուրախանում էր, և գնում էինք մի-մի թաս վերմութ խմելու...։

—Իսկ դուք նկատեցի՞ք իմ դիրքը ստանաւորն արտասանելուց առաջ...

—Ինչպէս չէ, դուք ձեզանից ներկայացրիք խելագարութիւնը...

—Միթէ դուք այդ նկատեցիք...

—Ոչ թէ միայն ես, այլ ամբողջ հասարակութիւնը...

—Միթէ... Ո՜հ, որքան ուրախ եմ, որքան բաղդաւոր... իմ աշխատանքը ի դերև չանցաւ...

Եւ նա բարձրացրեց իր բաժակը ու այնքան ամուր խփեց

բաժակիս, որ նրա ձեռքին թասի միայն մի կտորը մնաց...

Գեղարուեստագէտ-հանճարը ըմպելիքներ չէր սիրում. նա խմող չէր. ես նրան երբէք չեմ տեսել ոչ հարբած և ոչ էլ քէֆով։ Բովանդակ ճաշի կամ ընթրիքի ժամանակ նա խմում էր մի քառորդ բաժակ գինի և այն էլ ջրով։

Նա շատ ցանկանում էր յետ պահել իր սիրելի Աւալեանին օղի խմելուց, բայց տեսնելով, որ այդ անկարելի է, ինքն էլ մշտապէս հիւրասիրում էր իր ընկերոջը օղիով...

Զնայելով, որ Թիֆլիսի գրեթէ բոլոր կանայք սիրահարուած էին նրա վրայ, սակայն նա և ոչ մէկին չէր քաջալերում, և նրան միայն զրպարտում էին...

II

## ՏԽՈՒՐ ՏԻԿԻՆԸ ԵՒ ՈՉ ՏԽՈՒՐ ՕՐԻՈՐԴԸ

Թիֆլիսում շատ օրիորդներ կային, որոնք պատկառելի տիկիններ են դարձել, յարգելի ամուսիններ և մայրեր... Ով կիմանայ թէ այդ դուք էք... Տխուր. տիկինը հայերէն չէ կարդում՝ մնում ենք դուք և ես. դուք ոչինչ չէք ասի, իսկ ես աւելի շուտ թոյլ կը տամ լեզուս դուրս պոկել, քան թէ ձեր անունը արտասանել...

Մենք ճաշին հրաւիրուած էինք Գաբրիէլ Սունդուկեանի մօտ։ Ճաշը պէտք է լինէր ժամի երեքին, բայց Գրիգոր Արծրունու հետ մենք վճռեցինք վաղ գնալ Գաբրիէլի մօտ, գիտենալով, որ նա մեզ մի բան պէտք է կարդար իր գրուածներից... Գրիգորը ուղևորուեցաւ դէպի Սունդուկեանի բնակարանը, իսկ ես— Ադամեանի մօտ, որի հետ միասին՝ Սունդուկեանի պատուէրի համեմատ՝ պէտք է գնայինք վերջինի մօտ։

Օրը գարնանային գեղեցիկ օր էր։ Ես մտայ Ադամեանի բնակարանը, բայց նա տանը չէր։ Այնտեղ էր միայն տ խ ու ր տ ի կ ի ն ը, որ շքեղ հագնուած տեղաւորուում էր մեծ գեղարուեստագէտի բնակարանը...

—Իվան Գրիգորիչ, գանգատուեց նա ինձ, ես չեմ կարողանում կարգի և կանոնի ընտելացնել Պետր Այրապետովիչին... Նայեցէք. ինչի նման է... այստեղ գերերը թափուած, այնտեղ գրքերը, վերմակը անկողնի տեղ բազմոցի վրայ ընկած... ծխախոտի մնացորդները մոխրամանի տեղ սեղանի և յատակի վրայ թափուած... կատարեալ անկարգութիւն...

—Ինչի էք վշտանում... այդ արտիստների սովորութիւնն է, ասացի ես ձեռքը համբուրելով. ինչքան ուզում էք տեղաւորեցէք, նա կը գայ և մի ժամից յետոյ նոյն անկարգութիւնը կը լինի...

—Ոչ, ես սկսում եմ համոզուել, որ նրան հարկաւոր է մի աղախին՝ բնակարանը մաքուր պահելու համար...

—Ես նոյնպէս համոզուած եմ, որ նրան հարկաւոր է մի գ ե ղ ե ց ի կ աղախին, Մոլիէրի սուբրէտների նման...

—Ի՞նչ նշանակութիւն ունի գ ե ղ ե ց կ ո ւ թ ի ւ ն ը, այստեղ հարկաւոր է տունը տեղաւորել և ոչ թէ գ ե ղ ե ց կ ո ւ թ ի ւ ն։ Ինչի այդպիսի խորամանկ հայեացք էք գցում ինձ վրայ. ես չեմ սիրում ձեր խորամանկ հայեացքները... կարծում էք ես խանդում եմ, այն էլ մի ա ղ ա խ ն ո ւ ն, շատ սխալւում էք...

—Ես չեմ սխալւում, որովհետև ոչինչ չեմ կարծում, միայն այս բնակարանին շատ կը սազէր մի գ ե ղ ե ց ի կ աղախին...

—Աւելի կը սազէր, քան թէ ես...

—Ինչ համեմատութիւն. ես խօսում եմ աղախնու և ոչ թէ ձեզ նման գեղեցկուհու-տիրուհու մասին...

—Լռեցէք, բաւական է, դուք միշտ պատրաստ էք ինձ հետ վիճել...

—Ընդհակառակը...

—Լռեցէք, լռեցէք... և իր փոքրիկ ձեռքով նա փակեց բերանս... լռեցէք... ես ուզում եմ ձեզ հետ մի դաւադրութիւն կազմել...

—Անկասկած գեղեցիկ աղախնու դէմ...

— Ոչ, ոչ, թողէք այդ տ գ ե ղ աղախնին. ոչ, մենք պէտք է դաւադիր լինենք Ադամեանի դէմ...

— Այժմ ես ձեզ բոլորովին չեմ ճանաչում. մենք երկուսս դաւադիրներ Ադամեանի դէմ... մի՞թէ կարելի է...

—Կարելի է, կարելի... Տեսէք ինչպէս... Դուք գիտէք, թէ որքան քիչ ռոճիկ է ստանում Պետր Այրապետովիչը... Նա միշտ փողի կարօտութիւն ունի... իսկ ես ունեմ աւելի քան թէ ինձ պէտք է... եթէ ես նրան առաջարկեմ, նա ինձնից ոչ մի պայմանով փող չի վերցնի... ուրեմն եթէ դուք նրան կասէք, որ վերջերումս ժառանգութիւն էք ստացել կամ մի այլ բան կը հնարէք և կառաջարկէք նրան պարտքով 200 ռուբլ...

—Այ, հիմի հասկացայ. 200 ռ. դուք ինձ կը տաք, ես էլ այդ գումարը կը տամ Պետրոսին ու երբ նա կը վճարէ իր պարտքը, ես այդ 200 ռ. ձեզ չեմ վերադարձնի և ինձ կը սեփականացնեմ...

—Լռեցէք, նա երբէք ձեզ չի վերադարձնի, և դուք էլ չէք կարող ձեզ սեփականացնել... Համաձա՞յն էք...

—Այո, եթէ աւելի քնքոյշ ինձ կը նայէք։

—Լռեցէք. նա գալիս է...

Լսւում էին աստիճանների վրայ թեթև քայլերի ձայներ. դուռը բացուեց և ներս մտաւ օրիորդ N։

Երկուսն էլ քարացած մնացին իրանց տեղերում... Տիկնոջ հայեացքը արտայայտում էր ատելութիւն, իսկ օրիորդը, որ չէր սպասում տիկնոջը այստեղ տեսնել, սաստիկ շփոթուած էր...

Ֆրանսուա Կոպպէի «Երկու վիշտը», մտածեցի ես։

Գեղարուեստագէտի սենեակ, երկու հակառակորդ կին, իսկ ես ի՞նչ եմ... Ես կամեցայ հեռանալ...

—Ես կամենում էի, արտասանեց շփոթուած օրիորդը և մի աղերսող հայեացք գցեց ինձ վրայ...

—Դուք կամենում էիք տեսնել պ. Ադամեանին իր բնակարանում. միայնակ ի հարկէ. և այդ ձեզ չաջողուեց, ասաց տիկինը. ձեր վարմունքը անվայել է մի պատուաւոր ընտանիքին պատկանող օրիորդի համար...

—Օրիորդ N, ինչի դուք այդպէս շփոթուեցիք։ Դուք կամենում էիք ստանալ Ադամեանից այն գիրքը, որ նա ձեզ խոստացաւ, պերճախօսութեան (դեկլամացիայի) դասի ժամանակ...

—Այո, այո, այն գիրքը... դեկլամացիայի համար...

—Այդ գիրքը Ադամեանը թողել է Կովկասեան գրավաճառանոցում, Զաքարիա Գրիգորեանի մօտ։ Նա ինձ դեռ երէկ այդ ասաց. անցէք գրավաճառանոցը և վերցրէք։ Սպասեցէք, ես էլ գալիս եմ, պէտք է գնամ Սունդուկեանի մօտ ճաշելու, արդէն ուշ է...

Ես համբուրեցի տիկնոջ ձեռքը և օրիորդի հետ դուրս եկայ սենեակից...

Նա շտապով իջաւ աստիճաններով և փողոցը դուրս նետուեց...

—Շնորհակալ եմ, անչափ շնորհակալ եմ։ Բայց այս դէպքը ամբողջ քաղաքը կիմանայ...

—Ես ձեզ խոստանում եմ, օրիորդ, որ ոչ ոք ոչինչ չի իմանայ...

Եւ, յարգելի տիկին, կատարեցի իմ խոստումը։ Այս դէպքը յայտնի եղաւ կարդացող հասարակութեանը միայն այժմ, իսկ հերոսուհին անյայտ է. նրան ճանաչում ենք միայն դուք և ես, և տխուր տիկինը, որ հայերէն չէ կարդում...

III

## ՃԱՇԸ ՍՈՒՆԴՈՒԿԵԱՆԻ ՄՕՏ

Երբ ես մտայ Սունդուկեանի մօտ, արդէն ժամի 3½ էր։ Սե-

դանատանը արդէն նստել էին ամենքը և ինձ համար տեղ էր թողնուած իմ անմոռանալի բարեկամ Նինայի կողքին, նրա և տ. Սոֆիայի մէջ տեղը։

Սունդուկեանի յանդիմանութեանը ես պատասխանեցի, որ Ադամեանի բնակարանում ես նրան սպասում էի, իսկ նա արդէն այստեղ էր։

Ճաշը իսկ եւրոպական էր և ոչ մի տեղական կերակուր։ Ըստ սովորութեան Սունդուկեանի մօտ ճաշի ժամանակ խօսակցութիւնը լինում էին կերակուրների շուրջը...

Գ. Արծրունի, Ադամեան, Սունդուկեան, տիկին և օրիորդ Նինա փոխանակւում էին ֆրանսերէն նախադասութիւններով...

Այնուհետև խօսակցութիւնը անցաւ Սունդուկեանի «Էլի մէկ զոհի» ներկայացմանը, ուր Ադամեանը պիտի կատարէր Միքայէլի դերը...

Ադամեանը հրաժարւում էր, պատճառաբանելով, որ Թիֆլիսի կեանքը նրան ծանօթ չէ, որ Սունդուկեանի գրուածքը այնպիսիներից է, որ պէտք էր ուսումնասիրել, իսկ դրա համար նա ժամանակ չունի։

Գրիգոր Արծրունին գտնում էր, որ թէև Միքայէլը անգոյն և թոյլ տիպ է, որ բարձր ուսում ունենալով, չէ յաղթում բոլոր արգելքները և ծնողների կամքի հակառակ չէ ամուսնանում Անանիի հետ, բայց և այնպէս վատ չէր լինի, եթէ Ադամեանը փորձէր այդ դերը կատարել. գուցէ նրա խաղը բոլորովին այլ կերպարանք տայ Միքայէլի դերին...

Այնքան խօսեցին, որ վերջապէս Ադամեանը համաձայնեց խաղալ այդ դերը, եթէ Ամատունին տայ իր համաձայնութիւնը «Էլի մէկ զոհ» պիէսան ներկայացնելու համար...

Արդէն ուշ էր, երբ բոլորը բաժանուեցին, բայց և այնպէս այդ թատերկի (պիէսայի) ներկայացումը Ադամեանով Միքայէլի դերում, որքան ես յիշում եմ, այնպէս էլ չը կայացաւ...

Երբ Ադամեանին յայտնի եղաւ իր բնակարանում պատահած անցքը, նա այնքան բարեխիղճ և կորրեկտ գտնուեցաւ, որ օգուտ քաղեց առաջին հանդիպումից օրիորդի հետ և բարեկամաբար համոզեց նրան, որ իրանց մէջ ամուսնութիւնը անկարելի է, մնացածի համար երկուսն էլ շատ բարձր և գերազանց էին։

Գերեզմանդ, վաղամեռ հանճար, աւելի մեծ նշանակութիւն ունի հայութեան համար, քան ապրող շատերի կեանքը... Թող թեթև լինի հողը աճիւնիդ։

Յ. Տէր-Գրիգորեան (Վանօ)

---

## ՑՈՒՑԱԿ ՆՈՒԻՐԱՏՈՒՆԵՐԻ

### Կ. Հ. Բ. Ը-ԹԵԱՆ ԿԱՐՍԻ ՀԱՅՈՑ ՈՐԲԱՆՈՑԻ.

Հիմնարկութեան օրէն մինչև մարտի 30-ը ստացուել են հետևեալ նուէրները. Հայ. կեդր. կոմիտէ և Կարսի փոխադարձ վարկի ընկերութիւն 1000 ական ռ.։ Դեկտ. 3-ին Կարսի երիտասարդներու կազմած երեկոյթէն 324 ռ., նոյեմբ. 28-ի երեկոյթէն 283 ռ., փետր. 17-ի երեկոյթէն 276 ռ. 8 կ., տ. Ե. Օհանջանեան 200 ռ., տ. Մորոյեանէ 120 ռ., գուլպայի մեքենայ գնելու համար։ Ն. Աղաբէգեանէ, Յ. Ճամբէկեան, օր. Վարդանեանի և պ. Լ. Ջիթողցեանի նշանադրէքին հանգանակուած և Հ. Գարաեանէ նուիրուած 100-ական ռ., Երիցուհի Գ. Ստամպոլցեանի յուղարկաւորութեան առթիւ իր մերձաւորներէն հաւաքուած 90 ռ., Ս. Զօքանեանցի մահուան առթիւ հաւաքուած 80 ռ., Մ. Եղիկեանի հարսանիքին հաւաքուած 70 ռ., Ա. Գաբրիէլեան, եղբարք Արշ. և Յար. Վահրամեան 50-ական ռ., Անդ. Էհրամճեանի հարսանիքին հանգանակուած 37 ռ., Պարոյր Կուրղինեանէ իր մօր մահուան առթիւ և Յով. Կարապետեանի տօնին հիւրերէն հանգանակուած 33-ական ռ., սափրիչ արհեստաւորներ Շահինեանի և Մալխասեանի միջոցաւ 32 ռ. 50 կ., Ս. Կիրակոսեանի յուղարկաւորութեան հանգանակուած 32 ռ., Մարտ. Սողոմոնեանի տօնի առթիւ հանգանակուած 32 ռ., մի խումբ երիտասարդներէ Մուշ. Բարաջանեանի միջոցաւ 26 ռ., Հմայ. Բիւքիւճեան, Օհան. Եապեան, բժիշկ Մինասեան, բժիշկ Պաղդասարեան, Պ. Մէճլումեան, Ման. Աբրահամեան, Խաչ. Կոպալեան, Տօնական Բէօսէեան, գեներալ Թամամշեան, Թալոեան ամուսիններ, Մահտեսի Օհան. Աղայեան, տ. Զանազան Այտընեան, Աւ. Ապաճեան, Վաղարշակ Բիշմիշեան, Պարոյր Աւետիսեան 25-ական ռ., Հայկ Մինասեան, Խաչատուր Բչերեան, Գր. Նալպանտեան 20-ական ռ., Լ. Եօքսիւզեան և Ստ. Շահինեանի հարսանիքին հանգանակուած 15-ական ռ., մի խումբ արհեստաւորներ՝ Մաթէոսեան և Համբարձումեանի միջոցաւ 11 ռ., եօթերորդ հիւանդանոցի աւագ բժիշկ Շարաֆեան ամուսիններ, Անդրանիկ Պոյաճեան, Լ. Օհաննէսեան, Կար. Զախալեան, Տ. Մաւէլեան, հայր Կաթանճեանի միջոցաւ Ջրօրհնէքին հանգանակուած, բժշկ. Արմենակ Աֆտանդիլեան, Թ. Ճիլաւեան, Ռ. Խանամիրեան, Թ. Սրմաքէշեան, Կ. Մելիք Անդրէասեան 10-ական ռ., հայր Կոթանճեանի միջոցաւ Ծննդեան տօնին եկեղեցւոյ մէջ հաւաքուած և Գ. Կարապետեանի որդւոյ մկրտութեան հաւաքուած 8 ռ. 50-ական կ., Օր. Ոսկանեանի միջոցաւ իրենց տան մէջ մանկական թատրոնի հասոյթ 6 ռ. 60 կ., Ար. Առուլմեանէ Հաւկեր թերթի համար 6 ռ., Գր. Մ. Սիրունեան, բժշկ. Պ. Խախոեան, Պ. Շիրինեան, տ. Վ. Թիւթինճեան, Վ. Մուրադեան, Ար. Արոեան, տ. Շուշ. Աբրահամեան, Տ. Աշխէն Թիւթինճեան, ոմն օր. Ստամպոլցեանի միջոցով, Սար. Բէօսէեան և Տաճ. Յակոբեան 5 ական ռ., Ոսկանեան ամուսիններ 4 ռ., Ս. Ն. Պաղդասարեան, Մ. Սահակեան, Ալ. Տէօնիւմալեան, Կ. Բարունակեան, Ս. Վարդանեան, Ս. Դամոեան, Եր. Բչերեան, Օհ. Գասպարեան, Տ. Ամպարճեան, Ե. Սողոմոնեան, Գ. Սայեան, Օհ. Օհաննէսեան 3-ական ռ., մի խումբ օրիորդներ և տիկիններ 2 ռ. 88 կ., հայր Գէորգ Ասլանեան և Ա. Խնկոյեան 2-ական ռ., Լ. Խ. Մելիքեան, Աշ. Թամոյեան, Ս. Սաֆարեան և տ. Տօնոյեան 1-ական ռ., եղբարք Տէր-Մինասեաններ նոյմ., դեկտ., յունվ., փետր. և մարտ ամսականներ—ամբողջ 50-ական ռուբլուց, 250 ռ., Գումարը 5145 ռ. 13 կոպ.։

Դրամական նուէրներէն զատ Որբանոցս ստացած է նաև առարկայական նուէրներ, պտուղ, քանփէթ և այլն։

---

## ՎՐԻՊԱԿ

«Համբաւաբեր»ի համար 24, սիւնեակ 754, տող 2—1 «Վարչութեան» բառից յետոյ պիտի լինի «Նախագահ տիկին Հեղինէ Առստամեան և Վարչութեան» և այլն։

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ
Հրատարակիչ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 388 | Պետրոսեան Առաքել | Կողեց | 10 | մայր | — | — |
| 389 | » Սահակ | " | 3 | » | — | — |
| 390 | » Մամիկոն | Բէղուտ | 10 | չունի | — | — |
| 391 | » Ճողօ | " | 4 | » | — | — |
| 392 | » Լուսիկ | " | 2 | » | — | — |

## Քէօր Աղբիւր

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 393 | Գասպարեան Բենիամին | Երից | 6 | չունի | — | — |
| 394 | » Աւետիս | " | 1 | » | — | — |
| 395 | » Տալիթա | " | 7 | » | — | — |
| 396 | Մինասեան Բաղչօ | " | 6 | » | — | — |
| 397 | » Ազատ | » | 4 | » | — | — |
| 398 | » Զարզանդ | » | 1 | » | — | — |
| 399 | Յովսէփեան Մովսէս | " | 8 | » | — | — |
| 400 | Ոսկանեան Ռուբէն | " | 5 | » | — | — |
| 401 | » Թովմաս | » | 3 | » | — | — |
| 402 | » Թեգիկ | " | 6 | » | — | — |
| 403 | Վարդանեան Արսէն | " | 10 | » | — | — |
| 404 | Վարդանեան Թագուհի | " | 13 | » | — | — |
| 405 | Վարդանեան Աղնիւ | » | 10 | չունի | — | — |
| 406 | » Եւգինէ | " | 8 | » | — | — |
| 407 | » Նոյեմզար | " | 5 | » | — | — |

## Ղըզըլ ղոչ

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 408 | Միլոեան Խաչալ | Եօնջալի | 10 | չունի | — | — |
| 409 | » Ջանթաս | " | 8 | » | — | — |
| 410 | » Գէորգ | " | 7 | » | — | — |

## Թափաղօլակ

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 411 | Բաղդասարեան Իգնատիոս | ՄոլլաՍալիմ | 12 | չունի | — | — |
| 412 | » Խանօ | " | 10 | » | — | — |
| 413 | » Յակոբ | " | 8 | » | — | — |
| 414 | » Մաքսիմ | " | 6 | » | — | — |

## Թալիբ Օղլի

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 415 | Գալոյեան Մուշեղ | Շէյխ Եաղուբ | 10 | չունի | — | — |
| 416 | Մանուկեան Անգին | " | 10 | » | — | — |
| 417 | » Յովհաննէս | " | 8 | » | — | — |

## Հոռոմ

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 418 | Բարսեղեան Մուրադ | ՄոլլաՍուլէյմ | 5 | մայր | — | — |
| 419 | » Արմենակ | " | 9 | » | — | — |
| 420 | Խոսեան Միսակ | " | 13 | չունի | — | — |
| 421 | » Ղազար | " | 10 | » | — | — |

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 422 | Տ. Պետրոսեան Թագուհի | " | 12 | " | — | — |
| 423 | » Յովհաննէս | " | 10 | " | — | — |
| 424 | » Յուլիանէ | " | 8 | " | — | — |
| 425 | » Իսկուհի | » | 6 | " | — | — |
| | **Էգանլար** | | | | | |
| 226 | Աղանեան Վահան | ՆարիմանԱգր. | 12 | հայր | — | — |
| 427 | Աղանեան Վույենց | " | 10 | մայր | — | — |
| 428 | » Պետրոս | " | 6 | " | — | — |
| | **Ղափլի** | | | | | |
| 429 | Աստալեան Աւետիս | — | — | — | — | — |
| 430 | Ղազարեան Մանուկ | Նարիմ.Ազար. | 10 | մայր | — | — |
| 431 | » Ալմաստ | » | 13 | " | — | — |
| 432 | » Անգին | " | 15 | " | — | — |
| 433 | Պետրոսեան Մարգարիտ | " | 8 | " | — | — |
| 434 | » Բենիամին | " | 10 | " | — | — |
| 435 | » Շամամ | " | 14 | " | — | — |
| 436 | » Անդրանիկ | " | 5 | " | — | — |
| 437 | Փօղոսեան Մարտիկ | " | 13 | " | — | — |
| 438 | Մխիթարեան Ջինէ | " | 7 | " | — | — |
| 439 | » Գերովբէ | " | 4 | " | — | — |
| 440 | Սարգսեան Շամամ | " | 14 | " | — | — |
| 441 | » Արիգնազ | " | 10 | " | — | — |
| 442 | » Ռուբէն | " | 8 | " | — | — |
| | **Բուղդաղ** | | | | | |
| 443 | Բօնդօեան Գերովբ | Քեաքռ.մէջլիս | 7 | չունի | — | — |
| 444 | Դանիէլեան Բագրատ | Եէնի քէօյ | 3 | չունի | — | — |
| 445 | Արշակեան Խուգօ | " | 10 | " | — | — |
| 446 | Դոխոյեան Մկրտիչ | Սոլաղպաշ | 15 | " | — | — |
| 447 | » Մուշեղ | " | 12 | " | — | — |
| 448 | » Սարա | " | 9 | " | — | — |
| 449 | Կիրակոսեան Ղուկաս | » | 6 | " | — | — |
| 450 | » Սամսոն | » | 8 | » | — | — |
| 451 | » Սանդրօ | » | 9 | » | — | — |
| 452 | Հլղաթեան Սոնէ | Եէնի քէօյ | 7 | » | — | — |
| 452 | Ղազարեան Սեթ | Սոլաղպաշ | 11 | » | — | — |
| 454 | » Ինկլիզ | » | 5 | » | — | — |
| 455 | Մուսեան Անգին | Քեաքոլու մէջ | 8 | » | — | — |
| 456 | Մարգարեան Յովէ | » | 7 | » | — | — |
| 457 | Փօղոսեան Խլաս | » | 4 | » | — | — |
| 458 | » Ֆլիդ | » | 2 | » | — | — |
| 459 | Սերովբեան Մարիամ | Քեաքոլու մէջ | 6 | » | — | — |
| 460 | Սրբէեան Ֆինչօ | » | 12 | » | — | — |

ՅԱՒԵԼՈՒԱԾ № 26
„ՀԱՄԲԱՒԱԲԵՐ"-ի

# ԱՆՈՒԱՆԱՑՈՒՑԱԿ ՓԱԽՍՏԱԿԱՆ ՈՐԲ ԵՐԵԽԱՆԵՐԻ

*Ալէքսանդրապոլի գաւառում գտնուող որբերի*

*նոյեմբ. եւ դեկտ. 1915 թ.*

| № № | ԱԶԳԱՆՈՒՆ ԵՒ ԱՆՈՒՆ | Ծննդավայր | Տարիքը | Ունի հայր կամ մայր | Ծնողների տեղը | Գաղթական | ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ |
|---|---|---|---|---|---|---|---|
| | *Ղըռըխ* | | | | | | |
| 329 | Գասպարեան Մովսէս | Եքմալ | 7 | մայր | — | — | |
| 330 | » Նազարէթ | » | 4 | » | — | — | |
| 331 | » Խրէ | » | 6 | » | — | — | |
| 332 | » Գիւլի | » | 12 | » | — | — | |
| 333 | » Ազնիւ | » | 16 | » | — | — | |
| 334 | » Սահակ | » | 15 | » | — | — | |
| 335 | Մալխասեան Վահան | Խասսուր | 12 | » | — | — | |
| 336 | » Տիրան | » | 16 | » | — | — | |
| 337 | Մելքոնեան Հեղինէ | » | 6 | » | — | — | |
| 338 | » Սրբուհի | » | 4 | » | — | — | |
| 339 | » Մելիք | » | 2 | » | — | — | |
| 340 | Յովհաննէսեան Անուշաւան | » | 10 | մայր եղբ. | — | — | |
| 341 | » Գագիկ | » | 7 | » | — | — | |
| 342 | Նազարեան Մելքոն | ՄոլլաՄուլէյմ | 10 | մայր | — | — | |
| 343 | Նազարեան Գասպար | » | 4 | » | — | — | |
| 344 | Պետրոսեան Մուշեղ | Խասսուր | 9 | » | — | — | |
| 345 | » Արշակ | » | 13 | » | — | — | |
| 346 | » Պետրոս | » | 8 | » | — | — | |
| 347 | » Եղիսաբեթ | » | 8 | » | — | — | |
| 348 | » Գեաղօ | » | 5 | » | — | — | |
| 349 | » Հայկանոյշ | » | 3 | » | — | — | |
| | *Շէշթափա-Գիւլլի Բուլաղ* | | | | | | |
| 350 | Մուրադեան Յովհաննէս | Քեակալլի | 2 | չունի | — | — | |
| 351 | Յովսէփեան Անդրանիկ | Եօնձալըխ | 12 | » | — | — | |
| 352 | » Ալմաստ | » | 14 | » | — | — | |
| 353 | Սահակեան Հերիք | Պուլանըխ | 12 | » | — | — | Կոյր |
| 354 | Գէորգեան Սանդուխտ | Նորադուզ | 7 | չունի | — | — | |
| 355 | » Քոչար | Մանազկերտ | 4 | » | — | — | |
| | *Դուզքեանդ* | | | | | | |
| 356 | Յակոբեան Գէորգ | Քեանքեալլի | 15 | չունի | — | — | |
| 357 | » Յակոբ | Պուլանըխ | 12 | » | — | — | |
| 358 | Յովհաննէսեան Շօղօ | » | 2 | » | — | — | |
| 359 | Սարգսեան Ատլաս | » | 8 | » | — | — | |

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| | **Ղըզըլ Քիլիսա** | | | | | |
| 360 | Գրիգորեան Անդրէաս | Խոտալիղ | 16 | չունի | — | — |
| 361 | Սարգսեան Լուսիկ | Խարաբդան. | 15 | » | — | — |
| | **Ղուրդ Բուլաղ** | | | | | |
| 362 | Յարութիւնեան Քեարամ | Բէղուտ | 16 | չունի | — | — |
| 363 | » Համազասպ | Պուլանըխ | 9 | » | — | — |
| 364 | » Գարեգին | » | 5 | » | — | — |
| 365 | Սարգսեան Հմայեակ | | 6 | » | — | — |
| | **Գիւլլի Բուլաղ** | | | | | |
| 366 | Մուրադեան Մխիթար | Եօնճալըխ Շէյխ Նազուբ | 14 | չունի | — | — |
| 367 | » Ազնիւ | » | 16 | » | — | — |
| 368 | » Ջոհրար | » | 8 | » | — | — |
| 369 | » Գէորգ | » | 6 | » | — | — |
| 370 | » Յովհաննէս | » | 1 | » | — | — |
| | **Չիֆթալի** | | | | | |
| 371 | Վարդանեան Փէփօ | Շէյվանչէյխ | 18 | չունի | — | — |
| 372 | » Նանօ | » | 16 | » | — | — |
| 373 | » Ջանան | » | 15 | » | — | — |
| 374 | » Սամուէլ | » | 6 | » | — | — |
| | **Հզըլար** | | | | | |
| 375 | Պետրոսեան Բերսաբէ | Ծղակ | 8 | չունի | — | — |
| 376 | » Հեղինէ | » | 1 | » | — | — |
| | **Ղազանչի** | | | | | |
| 377 | Առաքելեան Մուշեղ | Կողեց | 8 | մայր | — | — |
| 378 | Մանուկեան Արշակ | » | 7 | չունի | — | — |
| 379 | » Եղիշէ | Բէղուտ | 6 | » | — | — |
| 380 | » Խանում | » | 9 | » | — | — |
| 381 | Յարթինեան Քոչար | » | 10 | » | — | — |
| 382 | » Ալթուն | » | 12 | » | — | — |
| 383 | » Յովսէփ | » | 6 | » | — | — |
| 384 | Ղանդիլեան Ղանդել | " | 13 | » | — | — |
| 385 | » Մուշեղ | " | 8 | » | — | — |
| 386 | » Աւետիս | " | 3 | » | — | — |
| 387 | » Ֆէնիս | " | 5 | » | — | — |